# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 5•88



*Հանձնված է արտադրության 02.0.3.88 թ.: Ստորագրված է տպագրության 05.0.5.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66432: Պատվեր՝ 450: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 02.03.88 г. Подписано к печати 05.05.88 г. Формат 70×100 1/16. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 66432. Заказ 450. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2

**Շապիկի 1-ին էջին՝ Հ. ՀԱԿՈԲՅԱՆ, «ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ»**

Այս բանաստեղծությունները ես գերազանցապես գրել եմ նախ մտքումս, որ հետո միայն, լրտեսող աչքերից գաղտնի, մանրիկ տառերով գրի առել... Շինելիս օձիքի, թևածայրերի և կոճկատեղերի երկտակ ծալքերում էի պահում փոքրիկ մատիտս և բանաստեղծություններս՝ գրված ցեմենտի թղթյա պարկից կտրված պատառիկների, սիգարեթի բացված տուփի, բժշկական տեղեկանքների և քարտաթղթերի վրա. մի խոսքով՝ ինչ որ ձեռքս էր ընկնում, ինչի վրա հնարավոր էր գրել...

Իմ ընդհատակյային ղեկավար և ավագ ընկեր, կոմունիստ Տիգրան Աթոյանի խորհրդով ես աշխատում էի որքան հնարավոր է շատ անգիր անել, մի բան, որն օգնում էր ինձ ազատ արտասանել երեկոյան մթության մեջ և, որ ամենակարևորն էր, քիչ գրված թղթեր պահել մոտս՝ ճամբարներում հաճախակի խուզարկումներ կատարելու ժամանակ գերմանացիների և ոստիկանների՝ դավաճան ռազմագերիների ձեռքը չընկնելու համար:

Ժիտոմիրի համակենտրոնացման ճամբարում գրած իմ «Կոչ» բանաստեղծությունը, որի երկրորդ տառերը ներքևից վերև կարդալիս ստացվում էր իմ անուն-ազգանունը, «մատնեց» ինձ գեստապոյականներին... Վերջիններիս հարցաքննությունը ոչինչ չտվեց, բացի իմ երկու սեղանատամից, որ ծեծելիս ջարդեցին: Բարաքի փոխարեն ինձ բանտ տարան: Այնտեղ էլ ես չդադարեցի բանաստեղծություններ գրել: Բանտում եղածս ժամանակ ընկերներս բարաքների պատերին նորից փակցրեցին իմ բանաստեղծություն-կոչերից մեկը՝ «Իմ վրեժը» վերնագրով, իհարկե, հայերեն լեզվով: (Ժիտոմիրում էին կենտրոնացվել Ղրիմից և Խարկովից վերցված հայ ռազմագերիները): Ճամբարի պարետը, տեսնելով այդ, կարծեց, թե, իրոք, ես անմեղ եմ, «կոչերի» իսկական հեղինակը ուրիշն է ու գտնվում է ճամբարում, և երեսունչորրորդ օրն ինձ հանեց բանտից: Մոտ տասը օր անց շատերի հետ ես ընկա Սլավուտայի (Խմելնիցկի մարզ) № 301 ճամբարը, որին գերմանացիները «Գրոս-լազարեթ» էին կոչում, մինչդեռ իրականում գրոս-սպանդանոց-փորձակայան էր դա գերմանացի 120 բժիշկների համար, որտեղ մինչև մեր գալն արդեն սպանել էին սովետական 100.000





1941 թ. Լվով

ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ

# Երգեր գերությունից

ռազմագերիների: Մենք՝ նորեկներս, փրկվեցինք գերմանական «մարդասեր» բժիշկների «բժշկումից», որովհետև, չանցած երեք շաբաթ, մեզ լցրեցին ապրանքատար վագոններն ու տարան Լեհաստան՝ Սելցի համակենտրոնացման ճամբարը: Երբ Սելցում իմացա, որ Ժիտոմիրում գրած իմ բանաստեղծություններից մի քանիսը բերնից-բերան ինձնից առաջ են այստեղ հասել, անչափ ուրախացա:

Հինգ ամիս այստեղ աշխատելուց հետո, մի օր էլ մեզ ենթարկեցին բժշկական քննության, լուսանկարեցին անձնական «գործի» համար, որպեսզի ուղարկեն Գերմանիա՝ աշխատելու: Այնտեղ չընկնելու համար ես գերության իմ քարտից գաղտնի պոկեցի լուսանկարս (առայսօր մոտս է) և հարմար մի օր, երբ կայարանում ցորեն էինք բարձում վագոնները, ընկերոջս՝ դվինցի Բաբկեն Թովմասյանի հետ փախանք՝ մեկ ուրիշ գնացքում թաքնված...

... Ընդամենը երկու օր մնացինք ազատության մեջ՝ բնության գրկում, երրորդ օրը մեր անզգուշության պատճառով մեզ բռնեցին, ծեծեցին ու նորից վերադարձրին Սելցի ճամբարը, այս անգամ նախ՝ մենախուց, որտեղ հինգ օր

լավ «մշակելուց» հետո տարան մեկ ուրիշ բարաք, ապա մեկ շաբաթ անց մի մեծ խմբի հետ մեզ ուղարկեցին Գերմանիա՝ Ֆիլինֆիլդի քաղաքական ճամբարը: Ֆիլինֆիլդը սովետական ռազմագերիներին հայտնի էր «շաշկի լագեր» անունով: Այստեղ ոստիկանապետ էր նշանակված հայրենիքի դավաճան, վլասովական Միշան, որին բոլորը «դյադյա Միշա» էին կանչում:

Մեկ ամիս անց, մի օր էլ ուշ երեկոյան, երբ գործից վերադարձա, Բաբկենը չկար. ցերեկը նրան մի մեծ խմբի հետ տարել էին Բուխենվալդ:

Ինձ այլևս երկար չպահեցին Ֆիլինֆիլդում. մի քանի օրից մեկ այլ խմբի հետ ուղարկեցին Հովելհոֆի ճամբարը, որտեղ կային իտալացի և ֆրանսիացի ռազմագերիներ: Ընդամենը երկու շաբաթ մեզ պահեցին այստեղ: Այնուհետև ուղարկեցին Ֆալինգպոստենի ճամբարը, որտեղից էլ խումբ-խումբ տանում էին մոտակա գյուղերն ու գործատեղերը՝ մըշտական աշխատանքի: Եվ ահա, մի քանի օր անց մեզ շարեցին: Քաղաքացիական շորերով մի քանի մարդ գերմանացի սպայի առաջնորդությամբ մեզ մոտեցան: Նրանք, ինչպես անասուններին կզնեին, այնպես էլ մեզ աչքերով չափեցին ոտքից-գլուխ, շոշափեցին, սեղմեցին մեր մկանները՝ «գութ-գութ» ասելով, օձիքներիցս բռնած դուրս քաշեցին շարքից: Առանձնացրեցին քսանութ հոգու, որոնցից տասնինը հայ էին, վեցը՝ Ուրալի թաթար, երկուսը՝ վրացի և մեկը ուզբեկ: Գերմանացի չորս զինվորի (մեկը՝ եֆրեյտոր) հսկողությամբ մեզ տարան Լյուշե գյուղի № 3607 ճամբարը՝ աշխատելու հարուստ հողատիրոջ դաշտերում և արհեստական անտառում: Լյուշե գյուղը գտնվում է Հանովերի մարզի հյուսիսարևելյան մասում՝ Ցելլե և Վիտինգեն քաղաքների միջև: Քսանութ հոգիս այդ փոքրիկ ճամբարում մնացինք և աշխատեցինք մինչև 1945 թվականի ապրիլի 13-ը՝ մինչև մեր դաշնակիցների կողմից ազատագրվելը:

1945 թվականի մայիսի 9-ին սովետական երկու սպաներ եկան Վեզեր գետի վրա գտնվող Մինդեն քաղաքի ռազմագերիների № 6 հավաքակայանը և սկսեցին ցուցակագրել, թե ովքեր են ցանկանում վերադառնալ հայրենիք: Ես առաջիններից մեկը եղա, որ ցուցակագրվեցի հայրենիք վերադառնալու համար: 1945

## Աստղեր գունատ

Աստղեր գունատ,
Գունատ ինձ պես,
Ես նախանձով
Նայում եմ ձեզ,
Որ ազատ եք
Երկնի ծոցում,
Ու ձեզ ոչ ոք
Չի հալածում...

1942 թ., Ժիտոմիրի ճամբար

## Ուկրաինացի մայրը

Չգիտեմ ինչու, ուկրաինացի մայր,
Ախ, այսօր նորից հիշեցի ես քեզ.
... Քառասունմեկն էր: Կռիվ էր: Ամառ:
Ծարավ էի ես:

Ես պատահական մի դուռ թակեցի.
Ու դռան շեմին երևացիր դու.
Պապակ շուրթերով ես ջուր խնդրեցի,
Պաղ ջուր կենսատու:

Դու ներս գնացիր, քիչ հետո եկար՝
Ձեռքիդ մի ափսե հասուն տանձերով.
— Քրտնած ես, որդի, այս տանձերը առ,—
Ասացիր սիրով:

—Շնորհակալ եմ,— ասի,— ով սուրբ մայր,
Փույթ չէ՝ քեզ համար դառնամ նահատակ,
Երբ դու այս հեռու ափերում օտար,
Դարձար ինձ սատար:

Ուկրաինացի մայր, հոգատար, բարի,
Ապրո՞ւմ ես արդյոք, հիշո՞ւմ ես դու ինձ.
Ես կուզեմ, մայրիկ, կյանքդ երկարի
Խաղաղ, անթախիծ:

Գեստապոյական բանտի մեջ, ահա—
Նորից հիշեցի քեզ այս երեկո.
Իմ սրտում, մայրիկ, հավետ կմնա
Սուրբ պատկերը քո:

1943 թ.

## Մատաղը

Մի պառավ կին՝ գունատ, սմքած,
Ժամ էր տանում նիհար մի այծ:

Դեռ չհասած ժամի դռան՝
Զանգի ձայնն է հասնում նրան:

Ծնկում է հենց կանգնած տեղում,
Զույգ ձեռքերն է երկինք հղում:

Հեկեկալով դիմում.— Ով Տեր,—
Խաչակնքում երեսը ծեր,—

Այծս մատաղ կանեմ հիմա,
Միայն տղաս վերադառնա...

Նա ջահել է ու միՆուճար,
Նրան գթա, պառավիս տար...

... Այնինչ հեռու-հեռու կռվում՝
Որդին էր խոր վերքից մեռնում:

1943 թ., Սլավուտայի ճամբար

## Երազ

Ամեն անգամ երազում
Հայրենի տունն եմ տեսնում,

Մորս՝ շեմին լուռ նստած,
Գոգնոցի մեջ՝ մի քիչ հաց...

— Ախ, ինչ գիտես, մայր անգին,
Որ քաղցած է քո որդին...

1944 թ., Ֆիլինֆիլդի ճամբար, Գերմանիա

## Պարոնն ու շունը (բալլադ)

Ցնցոտիներ հագած մի կույր,
Թիկն է տվել մի պատի,
— Ողորմացեք,— կանչում տխուր՝
Խնդրում ամեն անցորդի:

Մի շեկ պարոն, ճարպոտ դեմքով,
Իր տիկնոջ հետ թևանցուկ,
Անց է կենում կույրի մոտով,
Զրուցելով կամացուկ:

Նրանց շունը ուրախ խաղում,
Թռչկոտում է վեր ու վար,
Տիկնոջ փեշին պոչն է քսում
Ու վազվզում անդադար:

Ափը պարզած մուրացկանը.
— Ողորմացեք,— աղերսեց:
Պարոնը ջերմ շոյեց շանը,
Կույրից հայացքը թեքեց:

Նա անտարբեր առաջ քայլեց
Իր փափկասուն տիկնոջ հետ,
Մեկ էլ շանը մտաբերեց՝
Նայեց շուրջը, նայեց ետ:

Տեսավ՝ շունը հեռվում նստած,
Կույրի դիմաց լուռ, տրտում,
Մեկնած բազկին թաթը դրած՝
Դատարկ ափն է լպստում:

20 ապրիլի, 1945 թ., Ցելե, Գերմանիա

թվականի մայիսի 27-ին սովետական մի խումբ ռազմագերիների, նրանց թվում և ինձ, Արևմտյան Գերմանիայի Մինդեն քաղաքի № 6 հավաքատեղից նախ գնացքով, ապա բրեզենտածածկ բեռնատար «Ֆորդ»-երով մեզ բերեցին Էլբա գետի սովետական ափը՝ Պարխիմ քաղաքում հանձնեցին մերոնց:

Կայացավ թռուցիկ միտինգ: Կարճ, բայց ջերմ, հայրենասիրական ճառեր արտասանվեցին... Հայտարարվեց, որ Ստալինգրադը ավերված է՝ նրա վերականգնումն համար հարկավոր է շինափայտ... Ցանկալի է, որ երիտասարդները, որոնք առողջ են՝ ցուցակագրվեն, մեկ տարի ժամանակով աշխատեն անտառային տնտեսության մեջ՝ օգնեն հայրենիքին...

Ես, որ Գերմանիայում անտառահատ էի եղել, որոշեցի ընդառաջ գնալ հայրենիքի կոչին և առաջիններից մեկը եղա, որ ցուցակագրվեցի...

Երիտասարդներին, նրանց թվում և ինձ, ուղարկեցին Պերմի (Մոլոտով) մարզ: Մեկ տարվա փոխարեն՝ աշխատեցի մեկ և կես տարի: 1947 թ. մարտի 9-ին ես Էջմիածնում էի:

Գերության մեջ թղթերի պատառիկների վրա գրած այս բանաստեղծությունները, որոնք, ինչպես վերևում ասվեց, թաքցրել էի շինելիս օձիքի, թևքածայրերի և կոճկատեղերի երկտակ ծալքերում, լույս աշխարհ հանեցի Պալաշերում: Բոլորն էլ խոնավությունից խունացել ու քրքրվել էին: Ես հազիվ, մեծ ջանք թափելով, դրանք արտագրեցի մի ընդհանուր տետրի մեջ: Բանաստեղծություններից շատերը գրեթե անընթեռնելի էին դարձել. հիշողությամբ վերծանում էի... Ինձ առանձնապես օգնում էր այն, որ դրանցից շատերը գերության մեջ անգիր էի սովորել...

Այսօր, երբ թերթում եմ այս բանաստեղծությունները, կրկին մեկ առ մեկ հիշում, վերապրում եմ անցած դաժան տարիների իմ կրած տառապանքները: Գրեթե բոլոր բանաստեղծություններն էլ ունեն իրական հիմք. բոլորն էլ տեսած, զգացած և ապրված դեպքեր են:

Ես չեմ կարող ասել, թե այս բոլոր բանաստեղծությունները կատարյալ են, բայց, որ գրված են պատանեկան բուռն պոռթկումով, հագեցված են ջերմ հայրենասիրությամբ և ֆաշիզմի նկատմամբ խորին ատելությամբ, ակնհայտ է:

ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳՍՅԱՆ

# ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ

(հատված վեպից)

Երեք օր մնացին Նախճավանում: Հանգստանում էին, դրամ վաստակում, որ ճամփու ուտելիք ունենան, իջևանատներում Գրիգորը գուսանական երգեր ու ասքեր էր տաղերգում և սառը գինով կտրում երբեք չհագեցող ծարավը, քանզի Նախճավանի ջուրը տղմահոտ էր, խմելը տհաճ, ծանր փորհարինքը կարող էր անկողնուն գամել մարդկանց, այն էլ ամառվա աստծո կրակ շոգին: Քաղաքն ամայի էր թվում: Իշխանական տըները բարձրացել էին Սիսականի զով լեռները: Սակայն անվերջանալիորեն շատ ու աշխույժ էր վաճառականների անցուդարձը, որոնք ուղտերի քարավաններով և ջորիների ու գրաստների շարաններն իրենց առաջը գցած գնում էին դեպի Դվին ու Անի և այնտեղից դեպի Վասպուրական և Ատրպատական աշխարհները: Իջևանատներում ասեղ գցելու տեղ չկար: Գողությունն անխուսափելի էր: Նրանց չէին մոտենում, գողանալիք չկար, չունեին: Տաղերգում էին և վաստակում հանապազօրյա հացն ու գինին: Սյունիքում էին, և լուրերի ճամփան երկար չէր: Լուրեր էին պտըտվում, որ շինականները կողոպտում են Տաթևի վանքի հարստությունները և կոտորում վանականներին, որ ցուրաբերդցիների խռովությունները թեև հանգեցնում են իշխանական տների ու զորաց միջամտությամբ, սակայն շինականներն անզսպելի են և անկոտրում: Նախճավանում նրանց գտնվելու երրորդ օրվա լուսադեմին քաղաքը լցվեց փախըստականների սարսափահար բազմությամբ, որոնք հալածվում էին Սյունյաց իշխանական զորքերի ու ոստիկանների կողմից: Փախստականները բռնել էին քաղաքի նեղլիկ ու փոշոտ փողոցները, շատերը չէին դիմանում հարթավայրի սպանիչ շոգին և նետվում էին ջրհորների վրա: Տեսարանը զարհուրելի էր: Մայրերի հոգնատանջ ու ցամաք կրծքերին նվում էին անոթի և հիվանդ ծծկերները: Տղամարդիկ ընթանում էին փախըստականների ետին շարքերում՝ հետապնդողներին դիմագրավելու համար: Շատերը զինավառ էին ու կատաղի, քանզի հետապնդողներն ավելի քան դաժան էին ու արյունարբու: Քաղաքի մայր եկեղեցու բակում կռիվ բորբոքվեց՝ անգութ, անողորմ, արյունոուշտ: Ձիավոր հետապնդողները հարձակվում էին շարժվող յուրաքանչյուր արարածի վրա՝ ծեր թե մանուկ, կին թե տղամարդ: Բազմությունը ձիերի սմբակների տակ տրորվում էր, նետվում դեսուդեն, սակայն անօգուտ: Եկեղեցու բակում ընդհարումն ավելի կատաղի ընթացք ունեցավ:

— Անօրեններ, ինչո՞ւ եք սրահարում կանանց ու մանկանց,— գոռում էին բոլոր կողմերից:

— Սրահարե՛լ, սրահարե՛լ,— հրամանները հատու էին, և լացն ու կականը, վայնասունն ու հառաչանքներն ի վիճակի չեղան մեղմելու հալածողների դաժանությունը:

Տղամարդ փախստականները բռունցքվեցին եկեղեցու դարպասի առջև և արագորեն դեպի ներս էին հրում յուրայիններին, որպեսզի կարողանային փրկել գոնե նրանց մի մասին: Պարզվեց, որ շինականների ձեռքը ոլորելն այնքան էլ հեշտ չէ: Քարեր թռան դեպի հեծյալները: Քարերի անձրև էր տեղում հալածողների վրա՝ անվրեպ, մահացու, և հեծյալներից ոչ քչերը տապալվելով ձիերից՝ ընկնում էին խռովարարների սրերից ու դաշույններից:

— Սատակել աստծո թշնամիներին,— ձայնը հրեշավոր բարձր էր և լսվեց եկեղեցու զանգակատնից: Նախճավանի մայր եկեղեցու հոգևորականությունն ու սպասավորները միացան հալածողներին և վանքի բակում պատսպարվածներին երկաթյա ու պղնձե աշտանակներով սկըսեցին քշել դեպի մարտնչող իշխանական հեծյալների սրերի ու նիզակների բերանը: Հոգևորականներից ոմանց ձեռքերին նույնիսկ սրեր ու դաշույններ փայլեցին: Փախստականներն ընկան երկու կրակի մեջ: Դրությունը վատացավ, դարձավ անհույս: Գրիգորը, որ իջևանատան տափակ կտուրից նայում էր ցած,



Նկարը՝ ԲՈՐԻՍ ՀԱԿՈԲՅԱՆԻ

քիչ էր մնում խելագարվեր կրոնավորների անմարդկայնությունից ու անաստված վայրագությունից: Նրանք անգթորեն կոտորում էին մանկանց ու կանանց.

— Աստված իմ, ինչո՞ւ ես թույլ տալիս սպասավորներիդ կատարելու այս նախճիրը: Աստված իմ, մի՞թե չես տեսնում այս ամենը: Իսկ եթե տեսնում ես ու լռում, ուրեմն դու...

Եվ լեզվի տակ ճխլվեց բառը: Աստծուն հանդիմանելը մահացու մեղք թվաց, աստվածապղծություն, սակայն աչքերի առջև կատարվում էր հրեշավոր մի բան, որը գնահատելու ուժ և իրավունք չէր գտնում իր մեջ երիտասարդ տաղերգուն: Իսկ եկեղեցու ավագ քահանան՝ ավելի խստասիրտ ու դաժան, քան ոստիկաններն ու զինվորները, զանգակատնից ղեկավարում էր յուրայինների գազանությունները:

— Սպասիր, Գրիգոր, հետնիցս չգաս, հիմա կվերադառնամ...

Մուշեղն էր: Թռավ իջնանատան ցածրիկ կտուրից, հասավ պարիսպներին և շրջվեց դեպի եկեղեցու բակը: Ծուտով կորավ Գրիգորի տեսադաշտից, և ուր գնալը չիմացվեց: Զնգում ու թնդում էին եկեղեցու զանգերը: Տագնապ էին հնչեցնում, և նախճիրը շարունակվում էր առավել ու առավել: Հետո հանկարծ, ասես հրամանով, դադարեց զանգերի ղողանջը: Հետո մարդկային մի ոռնացող մարմին հայտնվեց օդում, ինչ-որ ահռելի ուժով նետվեց զանգակատնից ու ջախջախվեց սալաքարերին.

— Ու, ու, ու...— մարեց մեռնողի ոռնոցը:

Նույնպիսի թռիչքով սալաքարերին զարկվեց ավագ քահանան: «Ի՞նչ ուղեղ, չարության ու ոճիրների անոթ, որ արժանիորեն կրեց պատիժը: Ուրեմն, արդար ես դու, տեր, նա քո սպասավո-

րը չէր, այլ գործընկերը սատանայի, որի պատիժն արդար էր և աստվածահաճո...»: Հանկարծ եկեղեցու դռանը նա տեսավ Մուշեղին, Կճավա վանքի միաբանության վանականին, որի ձեռքին վերուվարում էր հսկայական երկաթյա ձողն ու շամփրում անգութ եկեղեցականներին: Նա արդեն եկեղեցու բակում դրության տերն էր և աջ ու ահյակ հարվածներով տապալում էր եկեղեցու առանց այն էլ ոչ ատվար սպասավորներին: Այստեղ վիճակը շտկվում էր: Եկեղեցու դուռը բաց էր, և ասես շներից հալածված և միմյանց գլխի կուտակված կանանց ու երեխաների բազմությունը հեղեղի նման հոսեց բաց դռներից ներս: Դռները փակվեցին, և դեմ դիմաց մնացին շինականներն ու զորականները: Միմյանց էին բախվում տղամարդիկ, և առավել ուժգնորեն, քանզի առայժմ թոնդրակյանների թիկունքը ապահով էր, կանայք ու երեխաները պատսպարված էին եկեղեցում: Հալածողներին ոչ մի կերպ չէր հաջողվում ճեղքել պաշտպանվողների երկաթյա բռունցքը: Կռվող կողմերի դրությունը, հոգեվիճակը հավասար չէին: Փախստականները կռվում էին հուսահատ քաջությամբ, մահն արհամարհելով, որովհետև կռվում էին փրկելու իրենց հալածական կանանց ու երեխաներին, հետևաբար՝ նահանջելու տեղ ու հնար չունեին: Նետվում էին հեծյալների վրա, կեռերով քաշելով ձիերից ներքև և գործի դնելով սրեր ու տապարներ, դաշույններ ու դանակներ, նույնիսկ ատամները, խածելով իրենց խոշտանգիչների կոկորդները՝ խեղդում, խեղում, սպանում: Իսկ զորականները բնավ միտք չունեին իրենց կյանքն սպառելու խաժամուժի ձեռքով: Նրանք էլ տուն ու ընտանիք ունեին, ուր սպասում էին իրենց, և քանի-քանի անգամ ընկրկեցին խուճապահար: Զորապետները հորդորում էին, հրամայում, սպառնում՝ առաջ, բնաջնջել, ոչնչացնել...

Մուշեղը նորից երևութացավ: Նրա ձեռքերում վերստին վերուվարում էր երկաթյա ձողը: Նա ճանապարհ էր բացում կռվողների միջով և ընթանում էր դեպի զորականների հրամանատարը: Արագորեն հայտնվեց հրամանատարի թիկունքում: Համհարզը նկատեց.

— Հրամանատար, փախիր...

Հրամանատարը հասցրեց դեմքով շրջվել դեպի վանականը: Սուրը բարձրացավ ու կորագծով իջավ Մուշեղի երկաթյա ձողին: Զորեղ բախումից կայծեր թռան: Թուրը մեջտեղից երկու կես եղավ, սակայն արյուն երևաց նաև Մուշեղի դեմքին: Թուրն, այնուամենայնիվ, թեթևակի քսվել էր և վերից վար ակոսել Մուշեղի դեմքը: Հսկայական երկաթյա ձողը նորից բարձրացավ ու իջավ: Հրամանատարն անշունչ էր, և հրամայող այլևս չկար, որովհետև ծանր վերքեր ունեին նաև տասնապետերը և այլևս ի վիճակի չէին հրամայել զորաց: Եվ զինվորները ընկրկեցին:

Հետո տեղի ունեցավ աննախադեպ, զարմանալի մի բան: Լրացուցիչ ուժեր ստացան փախստականները: Խմբի առջևից, ձիու վրա զինավառ, հրացայտ հայացքը դեսուդեն հածելով, առաջանում էր շքեղ մի կին: Սաղավարտի տակից ուսերն ի վար ալիքվում էին սև գանգուրները: Զրահ ուներ հագին և կրծքին ոսկե հսկայական խաչը փայլում, շողշողում էր արևի տակ: Նրան հետևող խումբը թեև հետիոտն, սակայն զինավառ էր ու հմայվածի նման ընթանում էր իր տիրուհու ետևից.

— Սաթենը, Սաթենիկը...—նկատեցին կռվողները:

Հալածողների դրությունը դարձավ հուսահատական: Զորականները կնոջը տեսնելուն պես կախարդվածների նման կանգ առան, ձեռքերն ասես թուլացան, ու զենքերը նետեցին Սաթենիկի նժույգի առջև: Գերիներ էին այլևս:

— Ես կհաշվեմ, թե քանի դիակ կա մերոնցից,— խոսեց կինը,— յուրաքանչյուր սպանվածի դիմաց թրատել կտամ ձերոնցից մեկին, իսկ կանանց ու երեխաների յուրաքանչյուր սպանվածի դիմաց կսպանեմ ձերոնցից երկուսին: Համաձա՞յն եք, շինականներ...

— Համաձայն ենք, տիրուհի,— պատասխանեցին միաբերան:

— Խնայիր մեզ, տիրուհի, խնայիր...— ողբում էին գերյալները:

— Իսկ դուք խնայեցի՞ք սրանց,— մատնացույց արեց դիակները,— խնայեցի՞ք... Ակն ընդ ական, ատամ ընդ ատաման: Այդպե՞ս է, շինականներ...

— Այդպես է, տիրուհի...—եղավ պատասխանը:

Սաթենիկի ձայնը թավ էր, փափուկ ու կրծքային: Զայրույթի մեջ առավել երկնային էր թվում, քան երկրային: Գրիգորը նման վախճանի չէր սպասում: «Այս

կինը խռովարարների առաջնորդներից է, երկնային տեր, այս ի՞նչ է կատարվում աշխարհում հայոց: Ինչո՞ւ են սրբվել տերն ու շինականը, ինչո՞ւ են յուրայինները ոթում միմյանց արյունը: Ախր, մեր ազգը արյան գերկուտակումներ չունի: Մեր ժողովուրդը փոքր է, փոքր ածու, սակավարյուն: Ինչո՞ւ են սարքել այս սպանդը: Եվ ո՞վ է արդարը, և ո՞վ է մեղավորը: Ո՞վ է այս կինը, որ ըմբոստացել է երկրայինների ու երկնայինների հզորության դեմ: Ի՞նչ սխալ է կատարվում աշխարհում հայոց, որ աստծո անունն անգամ անկարող է հանգցնել հրդեհը, որ ճարակում է մարդկանց հոգիները, խլում նրանց կյանքը: Ինչո՞ւ է դաժանացել մարդ արարածը: Նա, որ աստծու պատկերն ունի, մի՞թե չի երկնչում աստծուց: Եվ մի՞թե աստված մարդ արարածին նմանեցնելով իրեն, հոգ չի տարել նրա հոգու մասին, թողել է, որ մարդկային հոգին դառնա սատանայինը: Ինչո՞ւ համար է այս խելացնոր սպանդը, այս կռիվը մարդկանց միջև և մարդու մեջ, ինքն իր դեմ, ուրիշի դեմ, աշխարհի դեմ, ինչո՞ւ...»:

Գրիգորը զարմանքից պլշած աչքերով նայում էր սպառազեն կնոջը: Սաթենիկը սաղավարտը ետ էր հրել, և նրա սպիտակ ու բարձրագնա ճակատին խռնվել էին ագռավաթույր գանգուրների անհնազանդ փնջերը: Աչքերը սև էին ու խոշոր, հրացայտ նաև: «Կինը ժամանակավորապես լքել է այս կնոջը, քանզի հայացքը սրափայլ է և ատելավառ: Սաթենիկը հրեշտա՞կ է, թե՞ սատանա: Այս գեղեցկուհու հոգում սատանան անկարող է բընակվել,— խորհում էր երիտասարդ վանականը, իսկ հրեշտակը, որ երկնչում է մահվանից, լքել է նրան: Այսքան աստվածային կին և սրամերկ, էգ վագրի նըման կատաղի ու գազազած: Վարսերը ջրվեժում են ուսերն ի վար, մեջքն ի վար: Մի՞թե նման կինը կարող է անարդար, անվայելուչ պահել իրեն տիրոջ նկատմամբ: Ի՞նչն է ցավեցրել սրա կանացի հոգին և մերկացրել սուրը: Հավատավորի ատելություն է, ոչ անհավատի: Անկեղծ ու ազնիվ է նրա ատելությունը: Նա ապավինել է ատելությանը, հավատում է ատելության և վրեժխնդրության կործանիչ ճշմարտությանը: Նա փրկում է մոլորված մարդկանց, նրանց մոլորությունը համարելով իր ճշմարտությունն ու հավատը: Օգնիր ինձ, տեր, հաղթահարելու իմ շփոթված հոգու երկվությունը, մարիր կասկածներս, համոզիր ինձ, որ այս կինը դև է, սատանա է, հերձվածող է, հեթանոսուհի է, այլապես ես կնետվեմ նրա ձիու սմբակների տակ, կգրկեմ նրա մուճակները, կերկրպագեմ նրան որպես ամենակատարյալի և մատաղի գառ կդառնամ նրա վայրագ գեղեցկությանը, օգնիր...»:

Հայացքը նորից ուղղեց Սաթենիկին և նրա վրնջացող նժույգի կողքին տեսավ Մուշեղին, որը խոնարհաբար համբուրում էր Սաթենիկ հրամանատարի աջը: Խստահայաց կնոջ մարդիկ հավաքում էին զոհվածներին՝ շինականներին մի կողմ, զորականներին՝ մյուս:

— Ես ձեզ կտանեմ Սիսական աշխարհ, և բարեկամ շեներում դուք կգըտնեք ապահովություն և մի կտոր հաց: Այստեղ դուք ապրել չեք կարող: Ծոցը կխեղդի ձեզ, ջուրը փորհարինքով կըսպանի ձեր մանկիկներին, իսկ իշխանաց զորքերը կթրատեն ձեզ: Լեռներում բարեկամները շատ են և կսատարեն ձեզ: Իսկ հիմա շարժեք գերիներին: Նրանց այստեղ դատաստանել չի կարելի: Նըրանց հետ կխոսենք քաղաքից դուրս, քաղաքից հեռու...

Եկեղեցու դռները բացվեցին, և դուրս հոսեց մարդկային հեղեղը: Մարդիկ վազում էին դեպի Սաթենիկը: Կանայք համբուրում էին նրա ոտքերը, փեշերը, ձեռքերը:

— Ծուտ պիտի գայիր, աղջիկս: Այսքան արյուն էլ չէր թափվի...— արտասվելով խոսում էր պառավներից մեկը:

— Ճանապարհն ազատ չէր, մայրիկ, բռնված էր զորաց խմբերով...

— Աստված քեզ կյանք տա և արև, աղջիկս...— օրհնեց պառավը:

Մուշեղն անշարժացել էր Սաթենիկի առջև, որը շարժվելու նշան արավ և թեքվեց նրա կողմը.

— Շնորհակալ եմ, հայր սուրբ, դու փրկել ես շատերին, գուցե միանաս մեզ...

— Չէ, տիրուհի, մեր միաբանությունը ևս անելիքներ ունի: Ես աճապարում եմ Անի: Անիում ևս խաղաղ չէ: Բայց Անին թագավորանիստ է, այնտեղ լինելու կարիք կա:

— Ուրեմն, բարի ճանապարհ քեզ և հաջողություն քո ուխտին,— ձեռքը բարձրացրեց Սաթենիկը:

Ձին ոստնեց ու սլացավ առաջ:

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

## Պատերազմ

— Ո՞ւր է իմ մայրը,—
Կանչում է տղան,—
Բացի ինձ համար
Ընթրիքի սեղան:
— Ո՞ւր է իմ հայրը,—
Կանչում է տղան.
Լուռ է աշխարհը,
Չկա պատասխան:

Ո՞ւր է իմ քույրը,—
Թռել է, չկա...
Բացում եմ դուռը,
Գոնե մեկը գա:

Հովն է մտնում ներս,
Ետևից՝ լուսին...
Եղբայրն է ասես՝
Գերանդին ուսին:

— Որտե՞ղ են հիմա,
Արդյոք ի՞նչ եղան,—
... Իմ մեջ է, մայրիկ,
Լալիս այն տղան:



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Փոքր պետությունները աշխատում էին հզորանալ: Եվ հզորանում էին հարևան պետություններին հպատակեցնելով: Հետո եթե իրար դիմաց էին կանգնում հզորացած երկու պետություններ, մեկն աշխատում էր մյուսին հաղթել ու հնազանդեցնել: Այսինքն՝ աշխարհում տիրում էր ուժի օրենքը: Մովսես Խորենացին մեզ հայտնում է այդ օրենքի բանաձևը՝ «Քաջերի սահմանը իրենց զենքն է»: Այդպես, պետությունների միջև «օրենքը» զենքի ուժն էր, բռնությունը: Դա գայլի օրենք էր:

Սա վատ է, անշուշտ, քանի որ ոչ թե արդարությունն էր հաղթում, այլ՝ ուժը, որը հաշվի չէր առնում, թե ինչն է արդար, ինչը՝ անարդար, ինչն է ճիշտ, ինչը՝ սխալ: Պետությունների, ժողովուրդների մեջ իշխող ուժի ու բռնության այդ օրենքը հնուց է գալիս և շարունակվելով հազարամյակներ, հասել է մինչև մեր օրերը:

Աշխարհի այն մասում (Հարավ-արևմտյան Ասիայում), որտեղ Հայաստանն էր, այդ օրենքի գործադրությունը շատ հստակ է երևում: 2-րդ դարում այդտեղ դեմհանդիման կանգնել էին հզորացած երկու պետություններ՝ Հռոմը և Պարթևստանը: Շրջակայքում կային և մի շարք ուրիշ երկրներ, որոնք կա՛մ այդ հզորներից որևէ մեկին էին կցված, անկախությունը բոլորովին կորցրած, կա՛մ կիսանկախ վիճակում էին՝ հնազանդ դարձյալ այդ երկուսից մեկին:

Հայաստանի վիճակը բավական ծանր էր, քանի որ այն ոչ թե այդ երկու հզոր ախոյաններից որևէ մեկի հարևանն էր, այլ երկուսի հարևանն էր միաժամանակ՝ երկուսի միջև գտնվող: Հայերի այդ վիճակը ծանր էր մանավանդ նրանով, որ Հայքը, ինչպես արդեն գիտենք, չուներ իր վաղեմի հզորությունը. չըկար Մեծ Հայքի Արտաշեսյան հզոր թագավորությունը, որ ընկնում էր բոլոր չորս կողմերի պետություններին ու երկրներին, չկար Տիգրանի հայոց կայսրությունը, որ դիմագրավում էր ու հաճախ էլ հաղթում Հռոմին ու Պարթևստանին: Հայքը ռազմական տեսակետից նախկին զորությունը չուներ, բայց, բարեբախտաբար, հայոց ինքնության ու պետականության ոգին մնացել էր: Հայ իշխանների ու թագավորների համար ուժի մեջ էր մնում Մեծ Հայքը որպես անկախ պետություն պահպանելու ծրագիրը,



## ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒ ԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# Վաղարշ Առաջին և Վաղարշապատ

ասպարեզից հանված չէր Տիգրանյան կայսրությունը վերականգնելու հեռանկարը: Բայց պարթևներն էլ իրենց ծրագիրն ունեին՝ մինչև Բալկանյան թերակղզի (Հունաստան) վերականգնել Աքեմենյան պարսից կայսրությունը և դեռ ընդարձակել՝ հասցնել մինչև Հռոմ (Իտալիա)՝ հաստատելով Արևելքի միանձնյա տիրապետությունը աշխարհի այդ մասերում: Հռոմն էլ, ինչպես գիտենք, իրեն համարում էր Ալեքսանդր Մակեդոնացու կայսրության հետևորդը, նպատակ էր դրել մինչև Հնդկաստան հասնելը և աշխարհակալ, մեծ կայսրություն հիմնելը՝ Արևմուտքի իշխանության ներքո:

Ահա այս ծրագրերի և ուժերի այսպիսի հարաբերության մեջ էր ընթանում Հայոց պատմությունը 2-րդ և 3-րդ դարերում:

Քրիստոնեությունը անաղմուկ տարածվում էր այդ նույն տարածքում. այն արևելքում հասել էր մինչև Հնդկաստան, արևմուտքում՝ մինչև Հռոմ և դրանից էլ հյուսիս ու արևմուտք: Բայց և ամենուրեք հալածական էր: Իսկ պետությունների մեջ շարունակում էր կատաղիորեն գործել գայլի օրենքը:

Հայոց Սանատրուկ II Արշակունու մահվանից (109 թ.) հետո 110—114 թվականներին հայոց գահը պարթևական երկու դրածո թագավորների՝ նախ Աշխադարի, ապա՝ Պարթամասիրի ձեռքին էր: Այդ դրածոներին դեմ էին ոչ միայն հայոց իշխանները, այլև՝ Հռոմը: Եվ մի պատրվակ գտնելով, 114 թ. Հայաստան մտան Հռոմի Տրայանոս կայսեր լեգեոնները:

63 թ. Հռանդեայի պայմանագրով հայոց թագավորները պետք է թագ ստանային Հռոմից, մինչդեռ պարթևները առանց Հռոմի համաձայնության հայոց գահ էին բարձրացրել վերոհիշյալ Պարթամասիրին: Հռոմը սա համարեց պայմանագրի խախտում և մեծ զորքեր մտցրեց Հայաստան: Ապա՝ Տրայանոսը իր արշավանքը շարունակելով, պարթևներից գրավեց նաև Միջագետքը՝ Բաբելոնով հանդերձ, պարթևների Տիզբոն մայրաքաղաքը, Սելևկիա և Եդեսիա քաղաքները, հասավ մինչև Պարսից ծոց, նվաճեց նաև արաբական Խարաքս երկիրը (այժմյան Քուվեյթի տեղում): Տրայանոսը ծրագրում էր արշավանքը շարունակել մինչև Հնդկաստան, բայց 117 թ. վախճանվեց Կիլիկիայում:

Տրայանոսը իր նվաճած երկրները զրկում էր որևէ տեսակ անկախությունից և դարձնում էր հռոմեական պրովինցիա և այնտեղ նշանակեց հռոմեացի կուսակալներ (լեգատներ):

Բայց Տրայանոսի նորաստեղծ պրովինցիաներում ժողովուրդն ու ազնվականությունը ըմբոստանում էին հռոմեացիների խորթ, իրենց համար զզվելի տիրապետությունից, և մի շարք վայրերում ապստամբություններ եղան: Հայաստանում հակահռոմեական պատերազմը ղեկավարում էր հայոց Սանատրուկ II թագավորի որդի Վաղարշը: Հայերը հաղթեցին, և հռոմեական լեգեոնները քշվեցին երկրից: 117 թ. Վաղարշը հռչակվեց որպես Մեծ Հայքի թագավոր:

Վաղարշ I-ը ջանում էր երկիրը ծաղկեցնել: Այդ նպատակով նա հնարավորություններ ստեղծեց Հայաստանում առևտրի զարգացման համար: Նա նախկին Վարդգեսավան առևտրաշատ ավանի տեղում հիմնադրեց նոր քաղաք, որը սկզբում հենց այդպես էլ կոչվում էր՝ Նոր քաղաք, բայց հետո թագավորի անունով սկսեց կոչվել Վաղարշապատ (այժմ Էջմիածին): Այս քաղաքը դարձավ հայոց նոր մայրաքաղաք, թեև Արտաշատն էլ մայրաքաղաքի իր իրավունքը դեռ երկար ժամանակ պահպա-

նում էր։

Վաղարշապատը շուտով դառնալու էր նաև հայոց մշակույթի գլխավոր կենտրոնը Մեծ Հայքում և այդ դերը պահպանելու էր շատ դարեր, մինչև 1918 թվականը։

Իսկ Արևելքում Տրայանոսի ստեղծած և իրենց գոյությունը շատ կարճ պահպանած պրովինցիաները Հռոմի՝ որպես գերհզոր կայսրության վերջին աշխարհազավթական հաղթանակներն էին։ Դրանք ապարդյուն դարձան Տրայանոսի մահով։ Հայաստանից բացի, նրա գրաված մյուս երկրներն էլ անկախացան կամ անցան Պարթևստանի գերիշխանության տակ։

Հռոմի թուլացումն Արևելքում ընդհանուր առմամբ դրական երևույթ էր, բայց և ուներ իր բացասական կողմը։ Դրա մի արտահայտությունն այն էր, որ լեռնական ալանները նորից սկսեցին ասպատակել Հայաստանը, Աղվանքը, Ատրպատականը, նույնիսկ հասան մինչև Կապադովկիա (Մեծ Հայքից արևմուտք)։

Վաղարշ I-ը մասամբ կանգնեցրեց այդ արշավանքները, ավերներ տալով նրանց առաջնորդներին։ Բայց Հռոմում տեսնելով, որ Հայաստանը կրկին հզորանում է, Վաղարշ I-ն էլ անկախ քաղաքականություն է վարում, որոշեցին ազատվել նրանից։ 138 թ. Հռոմի կայսր դարձած Անտոնինոս Պիոսը զանազան խարդավանքներով 144 թ. գահընկեց արեց հայոց Վաղարշ I-ին և նրա փոխարեն Հայաստանի գահին բազմեցրեց Հռոմին հնազանդ Սոհեմոս անունով մեկին, որը Ասորիքի Էմեսա քաղաքի թագավորիկն էր։ Նա Հայքում իշխեց մինչև 180-ական թվականների կեսերը (3 տարի ընդմիջումով)։

Առանց պարթևների համաձայնության Հայաստանում իր ուզած մարդուն թագավոր կարգելով՝ Հռոմն իր հերթին խախտեց Հռանդեայի պայմանագիրը։ Դա էլ չհանդուրժեց Պարթևստանը, և նրա թագավոր Վաղարշ III Պերոզը (Հաղթողը), 148 թ. գահ բարձրանալով, սկսեց հզորացնել իր երկիրը և պատրաստվել Հռոմի դեմ պատերազմի։ Իսկ Հռոմում գահ էր բարձրացել (161 թ.) Մարկոս Ավրելիոս կայսրը, որը բարքով մեղմ մարդ էր, մեծ փիլիսոփա և Հայաստանի նկատմամբ էլ մեղմ քաղաքականություն էր վարում։ Գուցե դա էր պատճառը, որ նրա գահակալության առաջին իսկ տարում պարթևական զորքերը մտան Հայաստան, Սոհեմոս թագավորը փախավ Հռոմ և այնտեղ դարձավ սենատոր։ Իսկ Հայաստանի գահին տիրացավ Արշակունի Բակուրը։ Սա իշխեց շուրջ 2 տարի, քանի որ 163 թ. հռոմեական լեգեոնները դարձյալ մտան Հայաստան, գրավեցին Արտաշատն ու Վաղարշապատը և մի տարի անց Սոհեմոսին նորից հայոց թագավոր հռչակեցին։

Հայ իշխանները վերջնականապես զզված էին հռոմեական դրածոյից ու Հռոմի գերիշխանությունից։ Եվ նրանք ապստամբություն բարձրացրին Հռոմի դեմ։ Հայերի դեմ պատերազմելիս սպանվեց Հռոմի զորքերի առաջնորդ Ստատիոս Պրիսկոսը։ Ապա հակահռոմեական շարժումը սկսեց ղեկավարել հայոց նախարար Տրդատը։ Հռոմի զորահրամանատար Լուկիոս Վերոսը հայերի դեմ օգնության կանչեց հենիոխներին (բնակվում էին Սև ծովի հարավային շրջանում)։ Տրդատը սպանեց սրանց թագավորին, ապա սուրը հանած սպառնաց իրեն՝ Լուկիոս Վերոսին։ Բայց, ի վերջո, հաղթեց հռոմեացիների մեծաքանակ բանակը։ Ըստ երևույթին, հռոմեացիները խոհեմությամբ իրենց ձեռքը գցելով Տրդատին, հաշիվ տեսան հայոց զորքի հետ։ Նրան մահապատիժ էր սպասում։ Բայց կայսր Մարկոս Ավրելիոսը ինչ-որ չափով մեծահոգի եղավ և որոշեց բավարարվել աքսորով։ Հայոց խիզախ առաջնորդ Տրդատն աքսորվեց հեռավոր Բրիտանիա։

Սակայն Տրդատի ապստամբությունն ու պատերազմը իզուր չանցան։ Հռոմը, որ ուզում էր Մեծ Հայքը ուղղակի կցել իր կայսրությանը, դարձնել հռոմեական պրովինցիա, հայերի դիմադրության պատճառով հրաժարվեց իր այդ ծրագրից։ 166 թ. հայկական պատերազմն ավարտվեց։ Մեծ Հայքը կրկին դարձավ անկախ պետություն։ 180-ական թվականների կեսերին (հավանաբար 185 թ.) Վաղարշապատում հայոց գահ բարձրացավ Վաղարշ II Արշակունին։ Այս գահակալությունը հայոց պատմության մեջ կարևոր էր նրանով, որ հայ Արշակունիների գահը այնուհետև դարձավ խստորեն ժառանգական և այդպես պահպանվեց մինչև 428 թվականը։

Հաջորդ զրույցը՝ «Պիոներ» №10 (1988)-ում



ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

# Ձեռք հեռուստացույցի հետ

Իտալերենից թարգմանեց ՄԵՐՈՒԺԱՆ ՀԱԿՈԲՅԱՆԸ

Հեքիաթը, որն այժմ կկարդաք, արտասովոր է նրանով, որ ունի ոչ թե մեկ, այլ միանգամից երեք վերջաբան՝ չհաշված նկարչի պատկերածը:

Շատ հավանական է, որ վերջաբաններից ոչ մեկը ձեզ դուր չգա: Այդ դեպքում ինքներդ կարող եք հորինել կամ նկարել նորը:

Մի երեկո սինյոր Վերուչչին գործից վերադառնում էր տուն: Նա ծառայող էր ու, եթե չեմ սխալվում, կարծեմ փոստում էր աշխատում: Ի դեպ, նա կարող է լինել ատամնաբույժ, ինժեներ կամ ինչ ցանկանաք: Նրա հետ կարող ենք վարվել ըստ մեր հայեցողության: Ուզենանք՝ կարող ենք նրան ներկայացնել բեղով, նույնիսկ մորուքով: Դե ինչ, բեղով-մորուքով: Իսկ այժմ եկեք մտածենք, թե ինչ հագուստ-կապուստ կարող է ունենալ, ինչպիսի քայլվածք, ինչպես պետք է խոսի: Բայց ավելի լավ է եկեք ականջ դնենք, տեսնենք ինչ է այժմ ասում:

— Օ, վերջապես տանն եմ, իմ տանը, իմ տանը... Օ, իմ տուն, իմ տուն, իմ հանգրվան... Վերջ, էլ ուժ չունեմ, չեմ դիմանում: Հոգնել եմ, սաստիկ հոգնել եմ այս իրարանցումից, մարդկանցից, փողոցի եռուզեռից, աղմուկ-աղաղակից: Հիմա տուն կմտնեմ, և վերջ, մնաք բարով: Աշխարհը կմնա պատուհանից այն կողմ, դրսում, դուք՝ նույնպես: Օ, վերջապես մենակ եմ, մեն-մենակ: Հրաշալի է: Առաջինը թող կոչի փողկապը, հիմա գրողի ծոցը ուղարկենք կոշիկները, միացնենք հեռուստացույցը, հարմարվենք բազկաթոռին, ոտքերս դնենք աթոռակին, վառենք ծխախոտը... Օ, ինչ երանություն... Վերջապես մե... Վայ, այս ո՞վ է, այս որտեղի՞ց հայտնվեցիք:

Մի գեղեցկուհի անուշիկ ժպտում էր սինյոր Վերուչչիին: Քիչ առաջ նա չկար, իսկ հիմա, ուղղակի հրաշք, նստած է բազմոցին, սինյոր Վերուչչիի դիմաց, ժպտալից նայում է նրան և նազանքով ուղղում պարանոցի զարդաշղթան:

— Սինյոր, մի՞թե ինձ չճանաչեցիք: Ես հեռուստատեսության ստուդիայի հաղորդավարուհին եմ: Դուք միացրիք ձեր հեռուստացույցը, և ահա ես ձեզ մոտ եմ: Հիմա ձեզ համար կհաղորդեմ վերջին լուրերը:

Սինյոր Վերուչչին առարկեց:

— Գոնե մի քիչ համբերեք: Վերջիվերջո ստուդիայում չեք, այլ իմ տանը, իմ բազմոցի վրա:

— Կներեք, բայց ի՞նչ տարբերություն: Երբ հեռուստացույցի էկրանին եմ, նաև ձեր տանն եմ, խոսում-զրուցում եմ ձեզ հետ:

— Բայց ինչպե՞ս հայտնվեցիք այստեղ, որ նույնիսկ չնկատեցի: Հավանաբար թաքո՞ւն եք ներս մտել:

— Չարժե դրա վրա գլուխ կոտրել, սինյոր: Դուք միայն ինձ ասեք, ուզո՞ւմ եք վերջին լուրերը լսել, թե՞ ոչ:

Սինյոր Վերուչչին հաշտվեց:

— Իհարկե, ձեր ասածը այնքան էլ համոզիչ չէ, բայց, ինչևէ, արեք՝ ինչ կամենում եք:

Գեղեցկուհի հաղորդավարուհին մաքրեց կոկորդը և սկսեց կարդալ:

— Եվ այսպես. «Անգլիայում շարունակվում է «Ռիդինգ» բանտից փախած վտանգավոր հանցագործի որոնումները: Ըստ ոստիկանության տեսչի հայտարարության՝ հանցագործը ամենայն հավանականությամբ թաքնվել է անտառում»:

Այդ պահին սինյոր Վերուչչիի ականջին հասավ ինչ-որ ձայն, որը գալիս էր, սակայն, ոչ թե էկրանից կամ հաղորդավարուհուց, այլ ուղղակի իր գլխավերևից: Ձայնն ասաց.

— Փչոց է:

— Հիմա՞ ով է,— տեղից վեր թռչելով բացականչեց սինյոր Վերուչչին:

— Հանցագործն է,— հանգիստ բացատրեց հաղորդավարուհին՝ առանց փոքր ինչ հուզվելու:— Տեսեք, նա թաքնվել է ձեր բազմոցի ետևում:

— Փչոց է,— կրկնեց ձայնը:— Իսկ թե որտեղ եմ թաքնված, երբեք չեք իմանա:

Սինյոր Վերուչչին նայեց ձայնի կողմը և վրդովված ասաց.

— Այդ ինչպե՞ս եք հանդգնել: Տեսեք է, զինված է... Իմ տանը՝ հանցագործ, խելագարվել կարելի է...

— Բայց մի՞թե դուք ինքներդ ինձ չեք հրավիրել,— ասաց հանցագործը՝ դուրս գալով թաքստոցից:

— Հրավիրե՞լ... Այ, թե հորինել գիտեք: Ուրեմն ես իմ տուն հանցագործնե՞ր եմ հրավիրում, պատի՞վ տալիս...

— Գիտեք, չեմ հրաժարվի:

— Ինչի՞ց:

— Պատիվ տալուց:

— Չէ, սա ոչ միայն ավազակ է, այլև լկտի, այո, այո... Մեկընդմիշտ հայտարարում եմ, որ ձեզ ամենևին չեմ ճանաչում և դուք այստեղ եք իմ կամքից անկախ: Դուք, սինյորինա, վկա եք:

— Ոչ, սինյոր,— ասաց հաղորդավարուհին,— ես չեմ կարող վկա լինել՝ որքան էլ ցանկանամ: Չէ՞ որ ինքներդ եք ձեր կամքով հեռուստացույցը միացրել:

— Ախ, պարզվում է, որ այդ ավազակը և...

— Այո, այո, և նա, և ես հայտնվել ենք հեռուստացույցից:

— Հը՞, պատիվ տալո՞ւ ես, թե՞ չէ,— հարցրեց հանցագործը:

— Համեցեք, համեցեք,— պատասխանեց սինյոր Վերուչչին:— Առաջ եկեք, խնդրեմ, նստեք, զգացեք՝ ինչպես ձեր տանը: Ես ինչ... Ես հեչ... Տունը իմն է, բայց՝ ինչ, երբ չեմ կարող տնօրինել: Դռներն ու պատուհանները փակ են, բայց մարդիկ շարունակ մտնում-իջնում են և անում՝ ինչ խելքները փչի:

— Բա արժի՞ մի գավաթի համար այդքան երկարացնել,— ընկատեց հանցագործը:

— Ծարունակե՞մ կարդալ,— հարցրեց հաղորդավարուհին:

—Իսկ ինչո՞ւ ոչ,—պատասխանեց սինյոր Վերուչչին:— Հետաքրքիր է, ինչով կվերջանա այս ամենը:

Հաղորդավարուհին վերսկսեց կարդալ:

«Սեմանտիկ զորքերի զորահրամանատար գեներալ Բոլոն հայտարարել է, որ Պլանավի հանրապետության դեմ վերստին կձեռնարկվեն ռազմական գործողություններ և որ պատերազմը կավարտվի Նոր տարուց ոչ վաղ»:

— Դա այնքան էլ հեշտ չէ,— հաղորդավարուհուն ընդհատեց ինչ-որ ձայն: Զգեստապահարանի դռները ուժգին բացվեցին: Սինյոր Վերուչչին կրկին ցնցվեց:

— Ի՞նչ... Ախ, հա... Դուք գեներալ Բոլոն եք, այդպես չէ՞: Իսկ ի՞նչ էիք անում իմ զգեստապահարանում:

— Դա կարևոր չէ,— պատասխանեց գեներալը:

— Այնուամենայնիվ կցանկանայի իմանալ,— պատասխանեց սինյոր Վերուչչին՝ ձգտելով իր կամքը թելադրել նրան:— Ռո՞ւմբ... Իմ պահարանում ռո՞ւմբ: Լսեք, ես գործ չունեմ ձեր պատերազմի հետ: Եվ հետո՝ կուզենայի իմանալ:

— Իմ գործը, հարգարժան սինյոր, զորքերին հրամայելն ու Պլանավին գրավելն է և ոչ թե ամեն մեկին պատասխանելը: Միայն կուզենայի սինյորինային ասել, որ իմ խոսքը սխալ է մեկնաբանվել: Ես ասել եմ, «Պատերազմը կավարտվի ոչ վաղ, քան Նոր տարին, քանի դեռ պլանավցիներին մեծից փոքր չեմ ոչնչացրել, մոխրակույտի չեմ վերածել, նրանց քաղաքներն ու գյուղերը և նրանց դաշտերն ու այգիները անապատ չեմ դարձրել»:

Հենց այդ խոսքի վրա հանցագործը չհամբերեց.

— Լսեք, լսեք է... Հըմ, ինչ թափ, ինչ պլաններ... Իսկ իմ նման խեղճուկրակ գողի համար ողջ Անգլիան տակն ու վրա են անում: Դե, հիմա ասեք ինձ, թե մեր երկուսից ո՞ր մեկն է իսկական

հանցագործը: Կուզենայի իմանալ…

— Իսկ ես,— նրա խոսքը կտրեց սինյոր Վերուչչին զայրացած,— կուզենայի իմանալ, թե վերջապես երբ պետք է բոլորդ ձեր փասափուսան հավաքեք ու կորչեք այստեղից: Վերջիվերջո սա իմ տունն է, գրողը տանի, և ես ուզում եմ իմ տանը մենակ մնալ: Թե ինչ կանեք, ինչ չեք անի՝ ինձ ամենևին չի հետաքրքրում: Ես… ես հիմա միջոցներ ձեռք կառնեմ և ձեզ այստեղից քշել կտամ: Հենց հիմա ոստիկան կկանչեմ, կասեմ, որ բռնությամբ եք տունս մտել: Հենց այդպես էլ կասեմ: Կկանչեմ բոլորին՝ ոստիկաններին, կարաբինակիրներին, երթևեկությունը կարգավորողներին, հրշեջներին… Վերջապես ես այս տան տե՞րն եմ, թե՞ ոչ: Վերջին հաշվով ուզում եմ հասկանալ…

Իսկ այդ ընթացքում հաղորդավարուհին շարունակում էր կարդալ լուրերը, և սինյոր Վեչուչչիի բնակարանը, հակառակ տանտիրոջ մենակ մնալու ցանկությանը, շարունակ լցվում էր նորանոր մարդկանցով՝ սովալլուկներով, զինվորներով, ամբիոնից ելույթ ունեցող քաղաքական գործիչներով, փողոցային «խցանման» հանդիպած վարորդներով, սպորտսմեններով՝ մարզվելիս, գործադուլավոր բանվորներով և նույնիսկ ռմբակոծության պատրաստվող մի օդաչուով: Աշխարհի տարբեր լեզուներով խոսող մարդկանց խոսք ու զրույցը, աղմուկ-աղաղակը, երգերն ու հայհոյանքները միախառնվել էին շարժիչների հռնդյուններին, ռումբերի պայթյուններին, հրաձգություններին:

— Բավական է,— բղավեց սինյոր Վերուչչին:— Սա դավաճանություն է, բռնություն: Բավական է, լսո՞ւմ եք, բավական է:

## ԱՌԱՋԻՆ ՎԵՐՋԱԲԱՆ

Հանկարծ լսվեց դռան զանգի զիլ ձայնը:

— Ո՞վ է:

— Բացեք, ոստիկանությունն է:

Փառք աստծո, ոստիկանությունն էր, հարևանն էր կանչել՝ աղմուկ-աղաղակից, պայթյուններից վախեցած:

— Չշարժվեք, ձեռքներդ վեր: Ձեր փաստաթղթերը:

— Շնորհակալություն, անչափ շնորհակալություն,— բացականչեց սինյոր Վերուչչին՝ խոր ընկղմվելով բազկաթոռում:— Տարեք բոլորին: Ոչ ոքի չեմ ուզում տեսնել: Բոլորը կասկածելի տարրեր են:

— Սինյորինային նույնպե՞ս:

— Դրան էլ: Նա ոչ մի իրավունք չուներ այս ամբողջ հրոսակախումբը տունս լցնել:

— Բարի, շատ բարի,— ասաց սերժանտը:— Դուք բոլոր իրավունքներն ունեք տնօրինելու ձեր անձնական կյանքը: Ես հիմա բոլորին բանտ կտանեմ: Սուրճ կուզենայի՞ք, սինյոր:

— Շնորհակալություն, նեղություն մի քաշեք, ես ինքս: Բացի այդ, սուրճը առանց կոֆեինի եմ խմում, թե չէ ողջ գիշեր չեմ քնի:

## ԵՐԿՐՈՐԴ ՎԵՐՋԱԲԱՆ

Հանկարծ… Սինյոր Վերուչչին լռեց: Նրա գլխում մի հիանալի միտք ծագեց: Իրեն նայող զարմացած մարդկանց ժպտալով, նա կամաց-կամաց մոտեցավ հեռուստացույցին և, համոզվելով, որ ոչ ոք իրեն չի կարողանա խանգարել, կտրուկ շարժումով անջատեց այն:

Առաջինը էկրանի լույսի հետ անհետացավ հաղորդավարուհին, նրա ետևից՝ մյուսները՝ հանցագործը, գեներալը, երգիչները, մարզիկները, զորքերը, ժողովուրդը: Ինչ հասարակ բան է, չէ՞, բավական է անջատել հեռուստացույցը, և աշխարհն իսկույն անհետանում է, հայտնվում դրսում՝ պատուհանից այն կողմ՝ թողնելով մեզ հանգիստ, ինքներս մեզ հետ:

Սինյոր Վերուչչին մարտի դաշտից հաղթանակած դուրս եկած մարդու տեսքով ժպտաց և վառեց ծխախոտը:

## ԵՐՐՈՐԴ ՎԵՐՋԱԲԱՆ

Հանկարծ… Սինյոր Վերուչչին դադարեց խելագարի նման բղավել:

Նա հասկացա՞վ:

Այո:

Իսկ ի՞նչ հասկացավ:

Այն, որ տանը փակվելը բավական չէ, որպեսզի մարդ ամբողջությամբ առանձնանա իրեն շրջապատող աշխարհից, մարդկանցից, նրանց տանջող ցավերից, նրանց հուզող պրոբլեմներից:

Այն, որ ոչ ոք չի կարող լիիրավ հանույք ստանալ, իմանալով, իսկ դրա համար բավական է միացնել հեռուստացույցը, որ դեռ կան մարդիկ՝ հեռու կամ մոտիկ, որոնք արցունք են թափում, տառապում են, մահանում, բայց միշտ մեզ հետ են, այս երկրի վրա, որը միակն է բոլորիս համար, մեր բոլորի համընդհանուր տունն է:

# 20-րդ դարի իտալական պոեզիա

## ԿԱՄԻԼԼՈ ՍԲԱՐԲԱՐՈ



Երեխան գնում էր, և օրորվում էին նրա թույլ ոտքերը,
և ամեն քայլափոխին թեքվում էր, ձեռք տալիս գետնի ցեխերին
իբրև ծաղիկների։

Եվ նա չհասկացավ,
որ ես շոյեցի իր գլուխը։

Նրա աչքերում այնքան լուսավոր զարմանք էր շողում,
որ ինձ թվում էր, թե ես շոյել եմ նոր ծաղկած երիցուկը։

## ԷԴՈՒԱՐԴՈ ՍԱՆԳՎԻՆԵՏՏԻ



Սա կոշկակար կատուն է, սա բարսելոնյան աշխարհն է՝
Կարլոս V-ի և Կլիմենտ VII-ի միջև, սա շոգեքարշ է, սա ծաղկած
նշենի է, սա ծովածի է, բայց շուռ տալով էջը, Ալեսսանդրո,
դու կտեսնես փողը.
սրանք Յուպիտերի ուղեկիցներն են, սա Արևի
ավտոուղին է, սա դպրոցական գրատախտակ է, սա
«Poetae latini Ave Carolini»-ի առաջին հատորն է, սրանք
կոշիկներ են, սա աթենական դպրոցն է, սա կարագ է, սա
բացիկ է,
որը ես ստացել եմ այսօր Ֆինլանդիայից, սա ծամող մկան է,
սա... բայց էջը շուռ տալով, Ալեսսանդրո, դու կտեսնես փողը.
ահա սա փող է,
իսկ սրանք իրենց գնդացիրներով գեներալներ են, սա
գերեզմանոց է,
նրանց գերեզմաններով, իսկ սրանք բանկեր են իրենց սեյֆերով,
իսկ սրանք պատմության դասագրքեր են իրենց
պատմություններով,
բայց շուռ տալով էջը, Ալեսսանդրո, դու ուչինչ չես տեսնի։



Օ՛ (ասաց նա), եթե դու ինձ համար գրես բանաստեղծություն.
Օ՛ (ասաց նա), եթե դու գրես,
չմոռանաս այն մասին, որ ես սպասել եմ քեզ Գապում, որ ես
լաց եմ եղել, որ շատ եմ լաց եղել,
եթե իսկապես գրես (ասաց նա), օ՛, չմոռանաս այն մասին, որ
իմ եղբայր Ալեսսանդրոն
նույնպես սպասեց և լաց եղավ, և նույնպես՝ շատ, որ ես գիշերեցի
այդ գիշեր
հյուրանոցում,
չմոռանաս գրել (ասաց նա), օ՛, չմոռանաս գրել, որ Պոմպեյում
բոլորն էլ մեռել են,
որ փաշիստները վատն են,
որ թվերը երբեք չեն վերջանում...

Թարգմանեց ՀԵՆՐԻԿ ԷԴՈՅԱՆԸ

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ՍԱԼՎԱՏՈՐԵ ՔՎԱԶԻՄՈԴՈ

## Զինվորները լալիս են գիշերով

Եվ խաչերը, և մուրճերը Գողգոթայի,
և մանկության սուրբ հիշողությունները
քիչ են, որպեսզի սպանեն պատերազմը:
Գիշերը, մահից քիչ առաջ,
լալիս են ուժեղ զինվորները
բառերի ստորոտում, ծանոթ բառերի,
որ սովորել են խաղաղ տարիներին:
Շատերի կողմից սիրված զինվորները...
Անանուն շիթերն արցունքի...

ՄԱՐԻՈ ԼՈՒՑԻ

## Կեսօր, գարուն

Կյանքը, որ նույնն է ամեն օր, ամեն տարի,
հոսում է տների մեջ հեզորեն, ճնշում
թախծի մեջ ընկնողներին: Քամին
անցնում է փողոցների երկար շարքերով,
չորացնում պատերը և տանջում ծաղիկը միմոզա:
Լռում է վաճառականն անտարբեր երջանկությամբ,
երկու ոտքերից զրկված տղամարդը
սայլից արձակում է շանը, սպասում,
և կինը՝ փաթաթված շալի մեջ,
անցնում է ծառերի և լապտերների թավուտով:
Այնտեղ բոլորն են միայնակ և ոչ թե
միայն ինչ-որ մեկը, այնտեղ մենության մեջ
հաց կրծելն արդեն դարձել է սովորույթ: Ցավը
ազգակիցն է այնտեղ համբերության,
որը դիտել եմ ես
որքան կարող էի,
և միայն անվախներն են փուշը հանում իրենց պսակի միջից:
Գարուն— և երկար,
սառն օրն է լուսավորում
և կործանում վաղանցիկ նախա-ծաղիկները:

«Ես սիրում եմ իմ հայրենիքը». այսպիսի վերնագրով շարադրություն բոլորդ գրած կլինեք: Խմբագրության փոստում էլ շատ են այդ թեմայով նամակները, և միշտ չէ, որ դրանք գոհացնում են: Նկարագրելով «իրենց հարազատ հայրենիքը», ոմանք, սակայն, վստահ եմ, բնության մեջ մանուշակը չեն տարբերում հիրիկից, լորը՝ կաքավից, այդ իսկ պատճառով նրանց գրածները ստացվում են դասագրքային պարզունակ տպավորությամբ ստեղծված անկյանք շարադրանքներ: Հող, քար, ծաղիկ, կենդանի... Կարելի՞ է միթե ոտքի տակ անմիջապես չզգալ հարազատ հողի տաքն ու պաղը (ոչ թե անհաղորդ ասֆալտի) ու այդ հողի նման ամուր լինել: Հազիվ թե: Կարելի՞ է չճանաչել հարազատ բնաշխարհի խոտն ու ծաղիկը, ծառն ու կենդանին և սիրել հայրենիքը: Ի՞նչը պիտի սիրես, երբ չգիտես, չես ճանաչում, չես տեսել: Այլ են գյուղական վայրերից ստացված նամակները. դրանք գուցե չեն «շողշողում» համեմատությունների վարժ առատությունից, բայց բնաշխարհի վստահ ճանաչողությունը թույլ է տալիս ճշգրիտ ստեղծել պատկերներն ու անկեղծ, համոզիչ շարադրել տեսածը, զգացածն ու ապրածը: «Բնությունն է ամենամեծ ուսուցիչը»— դարերով հաստատված իմաստություն է: Իսկապես, ի՞նչ ենք տեսնում մենք՝ ասֆալտի վրա մեծացած քաղաքաբնակներս, երբ չգիտենք, թե ինչպես է ճաքճքում, պայթում գարնան առաջին ձնհալից նոր ազատված, տաք գոլորշի արձակող սրսուռ սևահողը՝ խոտ ու ծաղկի անհամբեր տրոփյունից, կամ ինչպես է ուրախ տրտինգ տալիս մի տարեկան ջահել հորթը գարնու կանաչ արտում:

Անկարևո՞ր են սրանք: Հազիվ թե:

— Գյուղի երեխան շատ է ծանրաբեռնված, նա ազատ ժամանակ գրեթե չի ունենում,— ասում է զրուցակիցս՝ Թալինի շրջանի Արեգ գյուղի դպրոցի տնօրեն, պատմության ուսուցիչ Մուշեղ Կարապետյանը:— Յուրաքանչյուր տնտեսություն 5 կով, 20 ոչխար, խոզ, հավ է պահում, հող է մշակում: Երեխան դասերից հետո ուզած-չուզած պիտի օգնի ծնողներին, այլապես անհնար է, չենք հասցնի:

Անժամանակ սառնամանիքը դաշտերից քշել, տարել է աշնան դեղին, հասուն օրերը, գիշերն ամբողջ զվարթ խշշոցով բարակ ձնեհատ է մաղել Արգունի լեռան լանջերին, և խուլ ու անեզր է թախիծն առավոտի: Դրսի տհաճ ցրտից հետո տաք ու հաճելի է դպրոցում, և տանտերերի սրտաբաց, անկաշկանդ պահվածքը ավելի է մտերմացնում, մղում անկեղծ զրույցի:



Գրական խմբակի հերթական պարապմունքն է նախապատրաստվում Ներքին Բազմաբերդի դպրոցում:

ՇՈՒՇԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ

# Հարազատ հ... տաքն ու պա...

— Մեր ժողովուրդը խոպան չի գնում, գյուղը գնալով մեծանում է, արտագաղթի պրոբլեմ չունենք, մեր միակ հույսը հողն ու անասունն է, ուրեմն՝ հասկանալի է, թե ինչ արժե հողը մեզ համար: Դե, երեխեքն էլ մեծերից ինչ տեսնեն, այն կսովորեն:

Չէի էլ մտածել Արեգ գալու մասին: Հիմա ամաչում եմ խոստովանել, բայց Թալինը ես գիտեի Կաթնաղբյուր, Աշնակ, Բազմաբերդ և էլի մի քանի գյուղերով միայն:

— Ես քեզ հետո ցածի գյուղերը կըտանեմ,— իմ պլաններից ակնհայտորեն դժգոհ, նեղսրտում է ՀԼԿԵՄ Թալինի շրջկոմի քարտուղար Արթուր Փանոսյանը: Հանդաշեն, Ցամաքասար, Զարինջա, Բառոժ: Լսե՞լ ես: Նույն շրջանում են, բայց հոգեբանության, մտածողության զգալի տարբերություն կա:

Զարմանալի ոչինչ չկա, վերևի գյուղերի ժողովուրդը գաղթել է մեծ մասամբ Սասունից, իսկ այստեղ հիմնակա-



«Նարեկ» երգչախումբը փորձի պահին:

ողի
ղը

Լուսանկարները՝ ԱՐՏԱՇԵՍ ՀԱԿՈԲՅԱՆԻ

նում Ղարսից են, ուրեմն՝ վարքի, կենցաղի այդ տարբերությունը բնական է:

Իմ գրելիքը թերի կլիներ առանց Արեգի համեստ, իրենց բնաշխարհի նման շիտակ, ամենօրյա դժվար աշխատանքի, քար ու հողի դեմ կռիվ մղելու դիմաց դափնիների չսպասող մարդկանց հանդիպելու: Ասացինք, որ արեգցին համեմատաբար կայուն է իր հողի վրա: Հողն էլ բերրի է, ջրովի տարածքը՝ շատ: Դպրոցը գյուղատնտեսական թեքումով է, աշակերտները՝ պատրաստի մեխանիզատորներ: Աշխատում են նաև դաշտում՝ տրակտոր, կոմբայն են քշում, հող մշակում: Դպրոցի արտադրական բրիգադը շրջանում առաջինն է: Անցյալ տարի արժանացել է միութենական պարգևի: Մուշեղ Կարապետյանը այս ամենը պատմում է հենց այնպես, խոսքի մեջ, ասես այդպես էլ պիտի լիներ, չի նկարագրում ջրալի անձրևն ու դաժան կարկուտը, այրող արևն ու շեղբի պես կտրող ցուրտը, որ դաշտային աշխատանքի անբաժան ուղեկիցն են, ու մոռանում ես, որ խոսքը ի վերջո երեխաների մասին է, ոչ թե հասուն մարդկանց: Անցյալ տարի, սեպտեմբերին դպրոցը 150 տոննա ճակնդեղ է հանձնել: Իսկ ամռա՞նը...

— Ահա մեր ցուցանիշները՝ 13 հեկտար խոտ ենք փոցխել, 250 տոննա ծղոտ ենք հավաքել, 400 տոննա հացահատիկ ենք պահեստավորել, օգնել ենք խուզի աշխատանքներին, ինչպես տեսնում եք՝ տարվա բոլոր եղանակներին աշխատանք կա, երեխեքն էլ, ճիշտն ասած, ավելի հաճույքով դաշտում են աշխատում: Դպրոցի ընդհանուր եկամուտը անցյալ տարի կազմել է 4970 ռուբլի: Դա նշանակում է, որ ամեն աշակերտի միջին աշխատավարձը հասնում է 142 ռուբլու: Տնտեսությունն էլ մեզ շատ է օգնում: Այս տարի որոշել ենք կապալով հող վերցնել, որ իրենք էլ եկամուտ ստանանք:

— Ուսումնական գործերն ինչպե՞ս են:

— Վատ չեն: Ամեն տարի ունենում ենք բուհ ընդունվողներ: Ես, ճիշտն ասած, այդ մասին քիչ եմ մտածում: Սովորողը կսովորի: Բայց ահա, տեսեք, հետաքրքիրն այն է, որ սովորելու գնացողները վերադառնում են գյուղ, կարծում եմ՝ այս կարևոր հարցում իր համեստ, ավանդն ունեն նաև մեր ուսուցիչները: Դժվարը հողին կապվելու գիտությունն է: Երեխան, որ կապվեց իր ծառ ու ծաղկին, դժվար թե վատ մարդ դառնա:

Որ ուսուցչից շատ բան է կախված՝ ես համոզվեցի Ներքին Բազմաբերդ գյուղում, ուր երջանիկ պատահականությամբ առիթ ունեցա ներկա գտնվելու հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Սուսաննա Թորոսյանի կազմակերպած գրական խմբակի պարապմունքին: Եվ ես շատ կուզենայի, որ շրջանի նրա գործընկերները գնան ու սովորեն նրանից, քանի որ ուրիշ ոչ մի դպրոցում նյութի այդքան բարձրաճաշակ ու մակարդակով մատուցում ես չտեսա: Գրականության կաբինետը լույս ու մաքրություն էր բուրում, պատուհանները ծածկված էին ճերմակ փրփրաթողով, որի վրա անկանոն սփռված դեղին տերևները անհասցե թախիծ էին բերում: Ուշադիր նայողը, սակայն, կկարդար՝ «Աշուն»: Հասկանալի է՝ մի քանի օր առաջ տեղի ունեցած գրական երաժշտական կոմպոզիցիան այդպես է կոչվել: Իսկ այսօր... Մեղմ հընչում է միջնադարյան հոգեպարար մեղեդին և այդ մեղեդու ներքո աշակերտներից ամեն մեկը ներհուն, ոգեղենիկ մի ներկայությունն՝ արտասանում է Նարեկացի, Քուչակ, Ֆրիկ, Սայաթ-Նովա...





Ամենագեղեցիկ հատվածները, քառյակները, բանաստեղծությունները...Նախորդ օրը դպրոցներից մեկում ես հուսահատվել էի, լսելով թե ինչպես են Թումանյանին աղավաղում, հուսահատվել ու առանց մի բառ խոսելու դուրս էի եկել դասարանից, իսկ հիմա ուրախությունից ու հուզմունքից եմ համրանում: Սիրելի ուսուցչուհի, իմ զգացածն ու արտահայտածը թերևս քիչ է այն ամենի դիմաց, ինչ տեսա ես այդ մեկ ժամվա ընթացքում: Ձեր աշակերտները ձեզանից ոչ միայն գրականություն են սովորում, այլ, պահվածքի կուլտուրա, ինչպես միամտորեն խոստովանեցին նրանք...

Սակայն գրականության խմբակը միակ անակնկալը չէր դպրոցում: Հասմիկ Սամվել Թռրոսյանի «Նարեկ» երգչախումբը...

Կերթաք դուք մեր հայրենիք,
Կռունկներ, ա՛յ, կռունկներ,
Չունիք աշխարհում գաղտնիք,
Բարով երթաք, կռունկներ...

Այնուհետև՝ «Սասուն», «Պատիվ ունեցողը թող գա», «Հիմի՞ էլ լռենք», «Քաջ Անդրանիկ», «Գևորգ Չաուշի երգը» և էլի շատ ուրիշ հայրենասիրական երգեր: Երգում են կենտրոնացած, ներշնչանքով, մերթ կրակ կտրած, մերթ մեղմ, կիսաբաց աչքերի մեջ կարոտ ու ցասում... Լըսում ու տխրում եմ մեր սերնդի համար, որ «Խարույկով խարկվենք»-ով մեծացանք, տխրում եմ նաև շատ երեխաների համար, որոնք մեր գեղեցիկ, հայկական խրոխտ երգերը այժմ էլ չեն սովորում, չգիտեն... Ահա թե ինչու են ուժեղ, հայեցի մեծանում այս երեխաները: Եվ վըստահ եմ, եթե «Նարեկ» խումբը հանրապետությունից դուրս շրջագայելու մեծ հնարավորություն ունենար, վաղուց միութենական ճանաչման կարժանանար:

Դեռ Երևանում, Թալինի պիոներտան տնօրեն Գագիկ Կնյազյանը խոստացել էր ինձ ցույց տալ Գևորգ Չաուշի տունը Աշնակում, և ես, անկեղծ ասած, շտապում էի ժամ առաջ լինել այնտեղ: Եվ ահա մենք Աշնակում ենք: Կանգնել կարմիր տուֆից կառուցված այդ եռահարկ, բավականին ծավալուն շինության առաջ նայում ենք: Տունը կառուցել է ազնիվ քաջի եղբոր որդին՝ հանգուցյալ Գևորգ Մելքոնյանը, որի շիրիմն ամփոփված է շենքի ներսում, իսկ խորանից մեզ է նայում վեհանձն, պատվական դեմքունիրքով նրա դիմանկարը: Անժամանակ մահը թույլ չի տվել ավարտելու կառույցը, և ինը տարի առաջ, տունն ինչպես կիսատ մնացել է, այնպես էլ կա մինչև այսօր: Անձրևն ու ձյունը շարունակ հոսել են կիսակառույց պատերից ներս: Ու եթե այսպես շարունակվի, հավանաբար մի քանի տարի հետո տնից միայն ավերակներ կմնան: Մի՞թե հնարավոր չէ միավորվել ու գյուղով ավարտել շենքը, այն ի վերջո կարող է ծառայել «Ազգային-ազատագրական պայքարի թանգարանին»: Փաստորեն գործը, որ կարողացավ սկսել մի մարդ, մի ամբողջ գյուղ չի կարողանում ավարտել այսօր:

Իսկ դպրո՞ցը: Թող թույլ տրվի ինձ ասել, որ դա ղեկավարության կողմից կարծես մոռացված մի անկյուն էր, որ քայքայվել, ավերվել էր տարիների անձրևաջրից, խոնավությունից: Դպրոցի տնօրեն Ռոզա Եղիազարյանը հուսահատությունից տարածում է ձեռքերը, այսինքն՝ ի՞նչ անեմ, քանի անգամ դիմել, խնդրել եմ: Եվ եթե չլիներ նրա և ուսուցչական կոլեկտիվի սրտացավ վերաբերմունքը երեխաների հանդեպ, աշխատանքային ոչ նորմալ վիճակի պատճառով դպրոցը երևի թե փակվեր: Մինչդեռ նույնիսկ այս պայմաններում դպրոցը գործում է լրիվ ծանրաբեռնվածությամբ: Դասերից հետո՝ ֆակուլտատիվ պարապմունքներ, սպորտի խմբակ, երգչախմբի փորձ...

Խմբի ղեկավար Լարիսա Կիրակոսյանն ինքը ևս հրաշալի է երգում, այսինքն ո՞վ չի երգում Աշնակի դպրոցում: Ու դժվար է ասել՝ ուսուցիչնե՞րն են լավ երգում, թե՞ աշակերտները: «Քաջ Անդրանիկ», «Համբերե, հոգի, համբերե», «Աղանայի ողբը»... մեկը մեկից գեղեցիկ մեր հին հայկական երգերը հնչում են նորովի ու ջահել, մանկական զրնգուն, զուլալ ձայնով: Եվ այսպես, համարյա բոլոր գյուղերում, ուր ես եղա:

Երգը թալինցի երեխաների բազմազբաղ առօրյայի անբաժան ուղեկիցն է, երգում են տանը, դպրոցում, ֆերմայում, դաշտում: Նրանք ապրում են այդ երգերի մեջ՝ իրենց անցյալով ու ներկայով, վերելքով ու վայրէջքով: Եվ ես 'շատ եմ ուզում, որ հետո, երբ նրանք մեծանան, դառնան հասուն մարդիկ, իրենց ազնիվ վարքով նույնքան արժանի լինեն այդ երգերին, այդ հող ու ջրին, որի ժառանգորդն ու տերն են լինելու վաղը...




— Նավամոլորակ է,— ասաց աստղանավորդ Լեթսը:

— Եվ ինչ գեղեցիկ,— վրա բերեց կապուտաչյա մի աղջիկ՝ աստղաթիռի բըժըշկուհի Նիթը:

Տիեզերական եկվորները այդպես էին անվանում բոլոր այն մոլորակները, որոնց վրա կյանք կար:

Նիթը չկտրվեց լուսանցույցից: Նորահայտ մոլորակը մոգական, արտառոց ուժ ուներ, յուրօրինակ հմայք՝ մանավանդ այն աստղագնացի համար, որը երկար, շատ երկար ժամանակ իր ոտքերի տակ չէր զգացել տանը լինելու վստահությունը: Մոլորակն իր ջրային հայելիով, բուսաշխարհի կանաչով և երկնային կապույտի նրբերանգներով, իրոք, չքնաղ էր, և լողացող ամպերը տիեզերական գեղեցկուհու ուսերին գցված եթերային շղարշի էին նմանվում: Նիթի վճիտ աչքերի մեջ մոլորակի արտացոլանքն էր, այն ցոլցլում էր խինդով և կանչում, կանչում... Զարմանալի էր, սակայն, այդ ե՞րբ հասցրին հարազատանալ, այդ ե՞րբ հասցրին լուռ ասել իրար՝ «Բարև, եկա» և «Բարև, վաղուց էի ես քեզ սպասում»:

Վաղուց, շատ վաղուց, երբ իրենց աստղաթիռը դեռ ճանապարհին էր և չէր հասել Դեղին աստղի համակարգության սահմանները, բժշկուհի Նիթը, հրամանատար Սասան և անձնակազմի մյուս անդամները գիտեին, որ Դեղին աստղի 3-րդ մոլորակը բնակեցված է բանական էակներով, և նրանք հեռադիտման գերհզոր միջոցներով հայտնաբերել էին նոր քաղաքակրթություն: Իսկ հետո, երբ աստղաթիռը գտնվում էր այդ աստղային համակարգության սահմաններում,

գերզգայուն սարքերը, որոնք տիեզերական երկարատև ճանապարհորդության ընթացքում վայրկյան իսկ չընդհատվող հերթապահության էին, ռադիոտիրույթում որսացին մոլորակից տրվող հեռուստատեսային հաղորդում: Թեև այդ հաղորդումը երկրաշուրջ տարածության և համակարգության ներսում առկա ամենատարբեր արգելքների պատճառով աղճատված էր, այնուամենայնիվ, պատկերից հնարավոր եղավ եզրակացնել, որ այն իրենց չէր հասցեագրված: Աստղաթիռի որսածը, ամենայն հավանականությամբ, մոլորակի սովորական հեռուստահաղորդումներից մեկն էր: Հրամանատարի կարծիքով՝ աստղաթիռի սարքերը այդ հեռուստահաղորդումները կարող էին ավելի շուտ, նախքան համակարգության սահմաններին հասնելն էլ հայտնաբերել, եթե չլիներ ողջ համակարգությունը գոտևորող գազի, փոշու, լիցքավորված մասնիկների և այլ խանգարիչ տարրերի հսկայական արգելաշերտը:

Հանգստի սենյակի պատերը միշտ սովոր էին եղել ուրախության, աշխույժի: Այդ օրն այլ էր, լուռ էին անձնակազմի անդամները: Աստղաթիռի վերլուծիչները մոլորակի մթնոլորտում ռադիոակտիվ նյութերի անբնական քանակություններ, միջուկային պայթման հետևանք հանդիսացող իզոտոպներ էին հայտնաբերել: Կասկածել էին մի պահ և չէին շտապել հետևություններ անել. մտածել էին, թե տիեզերքը բազում չճանաչված գաղտնիքներ ունի, որ Նավամոլորակի բնական պայմանները իրենց սեփական պատկերացումներից կարող են տարբերվել: Բայց միջուկային փորձարկումը, որ հանկարծակի և հստակորեն դիտարկվել էր երկու ժամ առաջ, տխրեցրել էր նրանց:

— Լեթս, պետք է վերծանել նրանց հեռուստահաղորդումները, այդ կերպ մեզ կհաջողվի ինչ-որ բան իմանալ,— ասաց աստղաթիռի հրամանատար Ասան:

— Վերծանել,— ինքնամփոփ շշնջաց Լեթսը,— կվերծանենք, իսկ վայրէջք...

— Առայժմ չենք կարող, սպասելուց բացի ուրիշ ելք չունենք: Մոլորակի հասարակական հարաբերություններին, քաղաքական բարդ իրավիճակին ծանոթանալուց հետո միայն կարող ենք վճիռ կայացնել:

Անձնակազմի մյուս անդամները լռելյայն հավանեցին Ասային. քաղաքական անկայուն վիճակը միշտ էլ լի է վտանգով, և իրենք ակամա կարող էին մահասփյուռ կայծը լինել:

Ո՞վ ես դու, երկնախույզ արարած, քո ծննդի օրվանից սովոր աստղերի կանչին, կամքիդ մեջ տիեզերական ուժեր՝ եկել ես հեռուներից, հավատամքիդ հավատարիմ՝ տառապում ես քո նմանի ցավերով և համատիեզերական խորհրդով բոլոր բանական էակների գոյության իմաստներն աղերսում իրար, ո՞վ ես դու, ո՞վ ես դու...

Ծովի ալիքները համաչափ խշշում էին, փարվում ափեզրին: Նիթը վազում էր ալիքներին ընդառաջ, կրծքով բախվում նրանց, պոոթկուն հրճվանքով խայտում: Ծովի շնչառության հետ նրա ծիծաղն ու կապույտ լողազգեստում ամփոփված պիրկ մարմինը մեկ կորչում էին ալիքների տակ, մեկ լույս աշխարհ գալիս առաջվանից կարծես էլ ավելի հմայիչ, էլ ավելի կատարյալ:

— Վնաս չկա, թող մեր հրճվանքին էլ հաղորդվեն, առույգանան,— հովանոցի տակ պառկած մարդուն ժպտադեմ մոտենալով, արդարացավ աղջիկը: Նիթը նայեց ծովին. իրեն հետևելով՝ դուրս էին գալիս հարյուրավոր լողացողներ, ամեն ինչ առաջվա նման սովորական էր դարձել, երկրացիներից ոչ մեկի մտքով էլ չէր անցնում իր և իր հետ լողացող մարդկանց տրամադրության միջև ընդհանրություն տեսնել:

Հազվադեպ նրանք այդպիսի այցեր էին կատարում Երկիր, ազատորեն շրջում երկրացիների մեջ: Այդ ընթացքում ավելի մոտիկից էին ծանոթանում երկրաբնակների կյանքին, և հետո, թեպետ ծովերից շատերը մաքուր չէին, անտառներից շատերը վիրավոր էին, բայց այդուհանդերձ, բարձրաբերձ լեռների և բնության մյուս արարչագործությունների գեղեցկությունն ըմբոշխնելու կարիքն էին զգում:

Ասան և Նիթը ժամեր հետո Հիմալայան լեռներում էին: Ժայռեղեն գաղտնի մուտքը տանում էր լեռնային գաղտնարան: Քիչ անց, ժայռերի կրծքում ակընթարթորեն բացված ինչ-որ խոռոչից մի ոսպնյականձև բյուրեղ ճայթեց դեպի երկինք: Ասային և Նիթին տանող հետախուզական մոլորակաթիռը գնաց միանալու Արեգակնային համակարգությու-

նում գտնվող և մշտապես քողարկվող մայր աստղաթիինն։

Ամիսներ առաջ, երբ տիեզերական հեռուներից եկածները հանգամանորեն վերլուծեցին երկրացիների հեռուստահաղորդումները, նրանց համար պարզ դարձավ, որ հյուլեի գաղտնիքն իմացած երկիրը գտնվում է լինել-չլինելու սահմանագծին։ Երկրացիներին ներկայանալ՝ նշանակում է վտանգել քաղաքակրթության բախտը։ Ի՞նչ անել... Եվ հրամանատարը որոշեց չբավարարվել երկրային հեռուստահաղորդումներով։ Սկսեցին մոլորակաթիռներով կատարվող հետախուզական թռիչքները, մոլորակաթիռներ, որոնք անմատչելի էին թռչող սարքերի հայտնաբերման համար երկրացիների նախատեսած տեխնիկական միջոցներին։

— Հրամանատար, ուրեմն էլի՞ սպասենք,— հարցրեց Լեթսը։

— Այո, Լեթս, այո,— կարճատև լռությունից հետո հաստատակամ տոնով ասաց հրամանատարը։— Եթե մեր պատճառով հանկարծ պատերազմ սկսվի, երկրի կործանումը մեր ուժերով արդյոք կկարողանա՞նք կանխել։ Մեզանից և ոչ ոք չգիտի այս հարցի պատասխանը, իսկ ռիսկի գինը կարող է շատ թանկ լինել, շատ։ Մենք իրավունք ունե՞նք նրման փորձի...

— Ոչ, հրամանատար,— պատասխանեց Լեթսը,— ինչպես ես հասկանում եմ, այս մոլորակից հեռանալ նույնպես չենք կարող։

— Այդպես է ստացվում,— հաստատեց հրամանատարը և թևանցուկ անելով ընկերոջը, ուղղվեց դեպի կենտրոնական նավասրահ։— Եթե նրանք չլսեն բանականության ձայնը, մենք, մեր հնարավորություններին համապատասխան, պետք է փորձենք կանխել կործանումը, պետք է այս կամ այն կերպ միջամտենք։ Այո, վտանգին դեմ առ դեմ կանգնած քաղաքակրթությանը լքել և հեռանալ չենք կարող։

Կենտրոնական նավասրահի մուտքի մոտ նրանց ընդառաջ եկավ Նիթը։

— Շտապեք, հետաքրքիր հաղորդում է,—ասաց նա և աստղանավորդների հետ սրահ մտնելով, դիմեց դեպի էկրանը։

Երկրի հեռուստատեսային ալիքներից մեկով ելույթ է ունենում կանաչ աչքերով մի ճաղատ մարդ։

— «Թռչող ափսեները» միստիկների, դատարկախոս ժամավաճառների և սենսացիայի միամիտ սիրահարների, գիտնական կոչված խենթերի հիվանդոտ երևակայության արդյունքն են, ցնդաբանություն, որից շահում են միայն առևտրի ձեռնածուներ, ամեն տեսակ կեղծիքներով հարստացողները։ Երկրի վրա այլմոլորակայիններ ոչ եղել են, ոչ էլ կան,— անկանոն շնչառությամբ, գրեթե գոռալով ճգնում էր ապացուցել ելույթ ունեցողը։

Նավասրահում հավաքվածները բազմանշանակ նայեցին միմյանց, իսկ հրամանատարը ներողամտորեն ժպտաց...

— Զավեշտական է ու տխուր,— ասաց աստղանավորդ Լեթսը։

— Եվ գիտե՞ք, այսպիսի մարդիկ եղել են նաև միջնադարում, ինչ փույթ, որ նրանք հիմա փողկապ են կապում և քաղաքակրթության կեղծամ ունեն։

— Որտեղի՞ց գիտես։— Լեթսը հարցական նայեց Նիթին։

— Երկրային գրքերից մեկում եմ կարդացել, սրա նմանները առաջադեմ գաղափարների համար այրել են Ջորդանո Բրունո անունով մի մարդու՝ մոտ 400 տարի առաջ, Հռոմ կոչվող քաղաքի ծաղիկների հրապարակում։

— Ծաղիկների հրապարակ,— մտասույզ կրկնեց հրամանատարը,— նահատակվողի փառքին, նրա վեհ ու ողբերգական ճակատագրին արժանի անուն։— Ապա հրամանատարը ափերի մեջ առավ Նիթի մատները և ավելացրեց.— Այո, երկրաշուրջ ոլորտներում թերևս այնքան ժամանակ կմնանք, մինչև մարդը բավարար չափով ճանաչի իրեն և երկրային քաղաքակրթությունը հասունանա Մեծ ԿԱՊԻ համար։

... Ու մնացին նրանք, ու սպասում են նրանք, մինչև մարդն ապացուցի իր խոհեմությունը, ապացուցի առաջին հերթին՝ ինքն իրեն։ Սպասում են՝ մինչև մարդն իմաստնանա և հրաժարվի մահաՙփյուռ զենքերից, հազար ու մի ձևերով սեփական տունը թունավորելուց, իրեն իրենց անունով կոչի և աչքերը օրը ցերեկով չփակի ճշմարտության դեմ, մինչև անհետանան կույր բռնությունն ու միջնադարյան դահիճների վերջին շառավիղը։

Անկարող՝ սեղմել մարդու ձեռքն ու ասել՝ «Եկանք», անկարող՝ լքել կյանքի վիրավոր մոլորակը, նրանք մնում են իբրև տիեզերական ժամապահներ։

ԱՐՄԵՆ ՇԵԿՈՅԱՆ

# Ուղտն ու թուխպը

Ծանր-ծանր ուղտն է քայլում
Շոգ ու կրակ անապատով:
Ուղտն է քայլում՝ բեռնավորված
Ծանր-ծանր իր սապատով:

Անապատի մեծ երկնքով
Ծանր-ծանր թուխպն է քայլում,
Ու թվում է, թե երկնքով
Նույնպես հոգնած ուղտ է քայլում:

Եվ ուղտն ասաց.— Այ անբան թուխպ,
Չհասկացանք՝ ո՞ւղտ ես, թե՝ թուխպ,
Բավական է համը հանես,
Հերիք դու իմ տնազն անես,
Անգործ թուխպ ես, գեշ ու տձև,
Լավ է դառնաս վարար անձրև,
Դառնաս ընկեր ու կարեկից
Եվ փրկես մեզ այս կրակից:

# Դեպի ծով

Շոգ է: Առուն այս՝
Ժիր ու խոխոջուն,
Մեզ պես շոգից է
Վախեցած փախչում:

Մեզ պես փախչում է
Շոգերից անվերջ,
Գնում է՝ լցվի
Այն մեծ գետի մեջ:

Շոգ է: Եվ գետն էլ
Վարար ընթացքով
Շտապում է՝ որ
Շուտով հասնի ծով:

Խեղճ ծով. փախչելու
Ոչ մի տեղ չունես:
Մեզ՝ փախածներիս,
Պիտի ընդունես:

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

# Խենթուկ դափը

Չարություն էր անում դափը,
Չէր իմանում նա իր չափը,
Զայրանալով տերն էր գալիս,
Նրան մի լավ ծեծ էր տալիս:

Բայց խնդում էր փոքրիկ դափը
Եվ հնչում էր ինչպես ծափը,
Առվի նման երգ էր ասում,
Զանգակի պես զընգ էր անում:

Տիրոջ ձեռքը հոգնում էր խիստ,
Բայց չէր մնում դափը հանգիստ,
Ամեն զարկից զնգզնգում էր,
Իր մոտ կանչում մանուկ ու ծեր:

Բողոքում էր տերը, ախ, շատ.
«Սա հո՞ դափ չէ, գիժ է, հաստատ,
Ծեծից ո՞վ է ուրախանում,
Եվ լացի տեղ՝ աշխուժանում:

Ես ի՞նչ անեմ այս դափի հետ,
Խելքը գցած խելառի հետ»:
Բոլորն ասին՝ ոչինչ, ոչինչ,
Տուր մեզ, մենք էլ ծեծենք մի քիչ:

# Ծաղկի նվերը

Հնձած խոտի մեջ
Հնձած ծաղիկ էր,
Համ տխուր էր նա,
Համ գեղեցիկ էր:

Խոտաբույրի հետ
Եվ նրա բույրն էր
Տարածվում թեթև
Մոտ ու հեռուներ:

Կախարդիչ հոտ էր
Եվ ո՞վ կըմբռներ,
Որ դա այն ծաղկի
Վերջին նվերն էր:




Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Ներկայից դեպի ապագա տանող ճանապարհի վրա, որտեղից որտեղ, հայտնվեցին զրոներ, որոնք գնում էին իրենց բախտի ետևից կամ բախտ էին փնտրում, մի խոսքով՝ բախտախնդիր զրոներ: Շատ էին, թե քիչ, կարևոր չէ, որովհետև նրանց բոլորի գումարը միևնույնն է, հավասար է զրոյի: Նրանք առաջ էին գլորվում, ցատկոտում, փափուկ, ինչպես խաշած, կճպված ձվերը: Աշխարհում զրո ծնվելը մի տխուր բախտավորություն է, եթե նկատի չունենանք, որ բոլորովին չծնվելը նույնպես շատ ուրախ տարբերակ չէ:

Ճանապարհին զրոներն, իհարկե, նան ձրուցում էին, բայց՝ շատ անհետաքրքիր, որովհետև նրանց բոլոր խոսքերը հավասար էին ննվոցի՝ պլյուս երազանք, պլյուս փառասիրություն, մինուս ողջամտություն, բազմապատկված հույսերով և բաժանված տարակուսանքների:

Ինչնէ, ով քայլում է, մի տեղ հասնում է, եթե նույնիսկ զրո է: Եվ նրանց հասած առաջին նշանակալի տեղը մի խաչմերուկ էր: Եվ այդտեղից ճանապարհ կար, որ շարունակվում էր. ճանապարհ, որ աջ էր թեքվում. ճանապարհ, որ ձախ էր թեքվում: Սակայն ամենանշանակալին այն էր, որ այդ խաչմերուկի հենց կենտրոնում մի հին թախտ էր դրված: Շատ զարմանալի մի փաստ, որ կարելի էր բացատրել՝ իրար վրա գումարելով մի քանի ենթադրություններ: Առաջին ենթադրություն՝ «Այդտեղով անցել է կահույքով բեռնավորված մի մեքենա»: Պլյուս երկրորդ ենթադրություն՝ «Մեջը եղել է այդ զառամյալ թախտը, որն ամբողջ ճանապարհին ցնցվել ու ճռճռացել է»: Պլյուս երրորդ ենթադրություն՝ «Գույքատերը, որը նստած է եղել թափքին, զայրացել է այդ ճռճռոցից, մեքենան կանգնեցնել է տվել և իջեցրել է շատախոս գույքին»:

Հնամյա այդ թախտի վրա մի գրություն կար: (Պլյուս չորրորդ ենթադրություն՝ «Գույքատերը կատակասերն էր»): Զրոների ընթերցելու կարողությունը զրոյից չէր բարձրանում, բայց և մինուս էլ չէր: Նրանք տառաճանաչ էին այնքանով, որ դրանցից ամեն մեկը ճանաչում էր միայն մեկ տառ: Այս պարագայում նրանց ջանքերի գումարը, այնուամենայնիվ, տվեց իր արդյունքը: Ամեն մի զրո, իր ճանաչած տառի անունը տալով, գնաց կանգնեց կողքին: Հետո հայտնաբերված հնչյունները արտասանվեցին հաջորդականորեն, և ստացվեց մի նախադասություն, որը և միտք ուներ, և

հանգ, և երաժշտական ընդունակություն: Այդ նախադասությունը հետևյալն էր. «Նստիր թախտին, սպասիր բախտին»:

Հենց որ գրոների համար պարզ դարձավ թախտի պատմական առաքելությունը, իրար հրմշտելով բարձրացան վրան, տեղավորվեցին: Որըետ էր գլորվում ու նորից էր մագլցում, որը ոտնակոխ էր անում յուր նմանին, որը հըրճվում էր, որ ժամանակին զբաղվել է ալպինիզմով և հիմա օգտվում է իր ֆիզիկա-մարզական հմտությունից: Այնուամենայնիվ, ուրախալին այն է, որ բոլորն էլ տեղավորվեցին թախտի վրա, եթե ոչ կենտրոններում, ապա գոնե ծայրամասերում, ու ոչ մեկը զրկված չմնաց բախտի վերաբերյալ թախտի տված խոստումից:

Թախտը գրոների ծանրության տակ ճռռաց, որովհետև այդ բոլոր գրոների քաշերի գումարը նույնպես հավասար էր գրոյի:

Եթե թախտը մահացած լիներ, ապա առանց սխալվելու կարելի էր ասել. «Գրոն թեթև լինի քո վրա»: Սակայն թախտը դեռևս պնդակազմ էր և ոչ արժանի մասնակցելու խորովածների նախապատրաստմանը:

Եվ ահա վերևի ճանապարհից ժամանեց մի Հավ: Այդ Հավը կանգ առավ խաչմերուկի մեջտեղում, աչքերը ճըպճըպացրեց թախտին կուտակված գրոների վրա և կչկչաց.

— Այսքան շատ ձու... Ինչ բախտավորն եմ ես...— Եվ թռավ թառեց դըրանց վրա:

Եվ նա թուխս էր նստում մեկ մի գրոյի, մեկ մի ուրիշ գրոյի վրա: Եվ արթմնի երազում էր, որ կունենա շատ ճտեր, բոլորը կդառնան աքլորներ: Այդ աքլորների գլուխն անցած՝ ինքը կգնա աքլորակռվի, կհաղթի բոլոր հակառակորդներին: Եվ իրեն կթագադրեն որպես Հավ թագուհի՝ ի բարօրություն աշխարհի բոլոր ֆերմաների բոլոր ձվերի միջից դուրս եկած բոլոր ճտերի:

Գրոները մի տեսակ շփոթված էին այդ Հավի ջերմառատ հոգատարությունից և նրա թևերի տակ մի քիչ շոգում էին: Սակայն չէին գանգատվում շոգից, որովհետև խաչմերուկում խաչաձև ուղղություններով գործում են առնվազն երկու միջանցիկ քամի: Եվ փոխանակ մրսեն, հիվանդանան, հետո ջերմություն ունենան, ավելի լավ չէ՞ միանգամից ջերմանան առանց լրացուցիչ նախապատրաստությունների:

Հավի թուխս նստելու համբերությունը հավասար է քսանմեկ օրվա: Սակայն գրոներից ի՞նչ պիտի դուրս գա: Ինչ-ինչ, բայց ոչ ճուտիկ, ոչ ապագա աքլոր, ոչ էլ ապագա հավահղպատակ զինվոր: Երբ Հավը հասկացավ այդ թախծոտ ճշմարտությունը, ափսոսաց իր կորցրած օրերն ու ջերմությունները: Նա հավաքեց փետուրները սեփական ջերմության մընացորդների վրա, ցած թռավ թախտից և շարունակեց իր ճանապարհը դեպի նրա կարիքը չունեցող ինկուբատորային ապագան:

Գրոները չհուսահատվեցին և թախտի վրա շարունակեցին սպասել իրենց հնարավոր բախտին: Այն չուշացավ. ձախ ճանապարհից հայտնվեց Սիրամարգը: Նայեց իրեն սպասող գրոներին և բացականչորեն կչկչաց.

— Այսքան շատ օղեր... ինչ բախտավորն եմ ես...

Եվ Սիրամարգը երկու գրո կախեց իր ականջներից, չորս-չորս՝ յուրաքանչյուր թաթին, երկերկու ամեն մի մատին, հինգ հատ՝ վզին, մի-մի հատ՝ ամեն մի արտափետուրին: Զրո էին, մարդ դարձան:

Եվ իր ջոկած գրոներով զարդարված՝ Սիրամարգը շարունակեց ճանապարհը, մինչև որ հասավ իր ապագան՝ կենդանաբանական այգին: Նա շատ էր անփույթ և ճամփեքի փոշիների մեջ կորցրել էր իր գրո օղերը, և նրա փետուրների վրա մնացին միայն այդ օղերի հետքերը, որպես գծագիր հիշատակներ խաչմերուկում իր հավաքագրած գրոներից:

Այն գրոները, որոնք զրկվեցին Սիրամարգին զարդարելու ու նրա հետ ճամփորդելու բախտավորությունից, իհարկե, նախանձեցին իրենց քույրերին: Սակայն խորին հավատով լցված թախտի խոստումների նկատմամբ՝ հապշտապ դեն գցեցին իրենց նախանձը խաչմերուկի փոշիների մեջ և շարունակեցին սպասել իրենց բախտին:

Եվ ահա աջ ճանապարհից հայտնվեց Խլահավը: Նա այնքան էր ականջները փակել փետրավորների և ոչ փետրավորների վշտերի հանդեպ, որ, ի վերջո, խլացել էր, դարձել էր բանտապահ կենդանաբանական կրկեսում: Հիմա նա արձակուրդի մեջ էր, բայց ուշքն ու միտքը իր աշխատանքն էր: Նա դուրս էր եկել անտառից և շրջում էր ճանապարհներով,

որպեսզի որսա շրջմոլիկ անտեր կենդանիներին, նրանց բերման ենթարկելով տանի կրկես և արժանանա դրամական պարգևի:

Երբ Խլահավը հասավ այս պատմության խաչմերուկին, տեսավ թախտն ու դրա վրա կիտված զրոներին և կչկչացրեց.

—Այսքան շատ օղակներ... Ինչ բախտավորն եմ ես...

Եվ մի զրոն մյուսի մեջ անցկացնելով՝ Խլահավը շղթա էր հյուսում: Եվ հյուսում էր, և երգում էր՝ բաղաձայն: Ամեն մի օղակ կպցնելիս՝ իր մի կալանավորին էր հիշում: Հետո զրո քաշ ունեցող շղթան գցեց շալակն ու հրաժարվելով արձակուրդի մնացյալ օրերից՝ թռավ դեպի իր ներկան ու ապագան հանդիսացող կրրկեսը, որպեսզի լրացուցիչ շղթայի առյուծներին ու արջերին, շնիկընիկներին և խաղաղասեր աղավնիներին:

Այն զրոները, որոնք զրկվեցին Խլահավին ծառայելու և նրա հետ ճամփորդելու բախտավորությունից, չգիտեին՝ ուրախանա՞ն, թե՞ տխրեն: Եվ իհարկե, հապշտապ իրենց տխրադառը ուրախությունը դեն գցեցին խաչմերուկի փոշիների մեջ:

Սպասումների մեջ իրար հոմշտող զըրոները հո չէի՞ն կարող անվերջ սպասել: Զրոն ուր, անվերջությունն՝ ուր: Տրտնջացին, մրմնջացին, հետո որոշեցին. կբաժանվեն երեք խմբի, առաջինը կգնա ուղիղ ճանապարհով, երկրորդը՝ աջ, երրորդը՝ ձախ: Եվ պայմանավորվեցին, որ այդ ճանապարհները հետազոտելուց հետո, կվերադառնան հենց այդ խաչմերուկը, դեպի այդ թախտը, որին հարազատացել էին և որը կարծես դարձել էր նրանց համար տիեզերքի շտաբկայանը:

Այն զրոները, որոնք գնացին ուղիղ ճանապարհով, հանդիպեցին Մեկին, Երկուսին, Երեքին և ապշած կանգ առան: Նրանք ջերմ հարազատություն զգացին իրենց կյանքում առաջին անգամ հանդիպած այդ երեք թվերի հանդեպ: Ի վերջո, մի զրո համարձակվեց խոսել: Նա գոռաց ու սրագլուխ Մեկին ասաց.

— Ինչ գեղեցիկն ես դու... Թույլ տուր՝ քեզ միանամ,— Միացավ նրան, և Մեկը դարձավ Տասը:

Մի ուրիշ զրո գլխիկոր ու մտախոհ Երկուսին ասաց.

— Ինչ խելացի ես դու... Թույլ տուր՝ քեզ միանամ,— Միացավ նրան, և Երկուսը դարձավ Քսան:

Մի երրորդ զրո կերած-խմած Երեքին ասաց.

— Ինչ ուժեղն ես դու... Թույլ տուր՝ քեզ միանամ:— Միացավ նրան, և Երեքը դարձավ Երեսուն:

Էհ, մնացյալներն էլ հո անտեր չէի՞ն մնալու: Մեկը մյուսին նայելով հետևեցին հնարամիտ ու ճարպիկ առաջին զրոներին: Եվ այդպիսով ստացվեցին Հարյուրը, Հազարը, Տաս Հազարը, Հարյուր Հազարը, Միլիոնը, ինչպես և Երկու Հարյուրը, Երկու Հազարը, Քսան Հազարը և այլն: Ու նաև Երեք Հարյուրը, Երեք Հազարը, Երեսուն Հազարը, Երեք Հարյուր Հազարը և այլն: Զրոներն արդեն զգում էին իրենց կարևորությունը և երջանիկ էին: Նույնիսկ երբեմն երես էին առնում և Մեկին, Երկուսին, Երեքին ասում էին.

— Տեսեք, հա, մեզ չնեղացնեք, թե չէ՝ կթողնենք կգնանք, և դուք կկորցնեք ձեր բազմաքանակ կարևորությունը:

Մեկը, Երկուսը, Երեքը չէին բարկանում, ծիծաղում էին դրանց թեթևամտության վրա և պատասխանում էին.

— Էհ, դուք ի՞նչ եք որ առանց մեզ:

Այդպես բազմապատկված ու ծանրաբեռնված՝ թվերը վերադարձան խաչմերուկ, իրենց թախտուբախտին: Եվ շատ ուրախացան, որովհետև արդեն այնտեղ էին աջ ճանապարհից վերադարձած զըրոները՝ մշտապես իր աթոռին նստած Չորսի, հեծանվորդ Հինգի, քիմիկոս Վեցի գլխավորությամբ: Այնտեղ էին նաև ձախ ճանապարհից վերադարձած զրոները՝ մթնոլորտային տեղումներից թվերին պաշտպանող Յոթի, ցմփոր Ութի և հոգսերից կռացած Իննի առաջնորդությամբ:

Երեխաներով, թոռներով ու ծոռներով բազմապատկված թվերը գրկախառնվեցին և եղբայրաբար տեղավորվեցին թախտի վրա: Թախտը ճռռաց, բայց դիմացավ. ախր հին քոթուկ էր: Եվ այն անհայտ տիեզերագնաց գույքատերը շատ իզուր կորցրել էր իր համբերությունը և ձեռ էր քաշել թախտից, որը երկար տարիներ ծառայել էր նրան ու նրա բախտին: Այդ թախտը դեռ երկար կդիմանա իրենց բախտին սպասող ու չսպասող միլիարդավոր թվերի ծանրության տակ, կդիմանա ճիշտ այնքան, որքան Երկրագունդը՝ մարդկությանը:



ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# ՄԵՐ ՏԵՂԸ ԼԵՌԱՆ ԿՈՂՔԻՆ

Լուսանկարը ԶԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ

Իմ պատուհանի առջև Լեռն է: Նրա և մեր տան արանքով անցնող նանապարհը երեխաներին ամեն առավոտ դպրոց է տանում, ինչպես ինձ՝ տասը տարի առաջ: Ու երբ իմ հայացքը, անցնող դպրոցականներն ու Լեռը մեկ ուղիղ գծի վրա են շարվում, ինձ թվում է, թե երեխաները Լեռը տանում են իրենց ուսերին ու նրանք գուցե չեն զգում այդ անհելի ծանրությունը: Չեն զգում, որովհետև ո՞վ է իր մորը սիրելուց ծանրություն զգում, ո՞վ է ծանրություն զգում հայրենիքի կարոտից: Հանկարծ ծառը կարո ... զգալ, ինքը հատկապես ճյուղեր ունի, մար կարո՞ղ է հանկարծ զգալ, որ ինքը հատկապես ձեռքեր ունի: Եվ զգում են, նաև՝ ոնց որ թե չզգան: Ուրեմն այն, ինչ բնականորեն իր տեղում է, կարծես կորցնում է իր ֆիզիկական ծանրությունը և ավելի շատ հոգևոր կշիռ ստանում: Ու ահա թե ինչու է ինձ թվում, որ Լեռը դպրոցական երեխաների ուսերին է: Բայց որպեսզի երեխաները կարողանան Լեռը կրել իրենց ուսերին, որպեսզի ըն-

դանք ունենան այդ ուժը, անհրաժեշտ է, որ արժանի լինեն դրան: Լեռան տեղը միշտ այս դաշտավայրն է եղել վաղնջական ժամանակներից, երբ ըստ առասպելի՝ Նոյ նահապետի պատրաստած տապանը համաշխարհային ջրհեղեղից փրկեց նրան՝ իջնելով Լեռան գագաթին: Լեռը փրկեց մարդուն: Ուրեմն՝ ամենաճակատագրական պահին Լեռն իր տեղում էր: Տարօրինակ է, երբ փորձում են ապացուցել, որ ծառն իր տեղում է, դաշտավայրն իր տեղում է, կամ Լեռն է իր տեղում: Ինձ թվում է, որ այդ տարօրինակությունը չպետք է վերաբերվի բիբլիական անուններին, որովհետև մարդկությունը նրանց «ուսերին» է դրել ոչ միայն իր ֆիզիկական, այլև (որ կարևորն է) հոգևոր բեռը, և ուրեմն՝ ավելի ճիշտ կլինի, որ ասենք. Լեռը փրկեց ոչ միայն մարդուն, այլև՝ մարդկայինը: Ու մենք պարտ ենք նախ իմանալ հենց դա և պահպանել մարդկայինը:

Երբեմն-երբեմն ես մտովի մի քանի խոսք եմ փոխանակում պատուհանիս առջևով դպրոց գնացող երեխաների հետ:

«Գիտե՞ք, ձեր մասին է ասված՝ աշակերտները սովորելու մեջ ծույլ, սովորեցնելու մեջ փութաջան, համաձա՞յն եք»:

«Համաձայն չեմ, հետաքրքիր է՝ ո՞վ է այդպիսի բան ասել»,— պատասխանում է դպրոցականներից մեկը, գուցե նաև՝ գերազանցիկ: Սովորաբար գերազանցիկներն են առաջինը ձեռք բարձրացնում ու առաջինը պատասխանում, որպեսզի հասցնեն ստանալ իրենց «5»-ը:

«Այդ խոսքերի մեջ կարևորը ցավն է, ոչ թե հանդիմանանքը. ես այսպես եմ հասկանում Խորենացուն»,— ասում է երկրորդը: Չէ, իսկական գերազանցիկն այսպիսին պետք է լինի»:

«Ինչ ուզում է՝ ասեն, բոլոր ժամանակներում էլ ծույլերը գերակշռել են»: Սա հաստատ ծույլիկ էր:

Մեր դասարանում մի ծույլիկ կար, անունը՝ Արսեն: Սովորական ծույլիկ, որ եթե մի անգամ դասը պատասխանում էր «3»-ից քիչ բարձր, ապա ուսուցիչները «5» էին նշանակում նույն այն սովորությամբ, երբ «5» են նշանակում «մաքուր» գերազանցիկին՝ ինչպես էլ վերջինս պատասխանած լինի:

Արսենը բակերից հարևան-ծանոթների մեքենաներն էր թռցնում: Մի քիչ զբոսնում ու ետ էր բերում անվնաս: Ժամերով կկանգներ մեքենան նորոգող տիրոջ մոտ ու կմոռանար, որ դպրոցի զանգը արդեն հնչել է: Ու թեև նա ֆիզիկայից, մաթեմատիկայից, պատմությունից, գրակա... (պիտի այսպես մինչև վերջ թվարկե՞մ, ինչ է)... «2»-ներ էր ստանում, բայց լավ վարորդ դարձավ (ճիշտ է, ինչ դըպրոցում չէր սովորել, ավտոմեքենայի դասընթացներին սիրով ուսումնասիրեց): Հիմա երբ Արսենին հարցնես՝ «Հը՞, ո՞նց ես, գործերդ ինչպե՞ս են», նա կըպատասխանի՝ «Ոչինչ, գոհ եմ, կամացկամաց»: Հետո կարծես ինքն էլ չբավարարվելով իր պատասխանից, կավելացնի իր սիրած ոճով. «Հայ ենք, մի ձևով պիտի ապրենք»: Արսենի կողքին ես անմիջապես, հենց այդ պահին տըխրությամբ հիշել եմ մեր դասարանի Սերգեյին ու նրա խոսքերը. «Դե, մի կերպ ապրում ենք, էլի»: Սերգեյը նույնպես հիմա վարորդ է: Դպրոցում «4» ու «5» էր ստանում: Ուղղակի նրա կյանքի հանգամանքներն ավելի ուժեղ էին, ճակատագրի լծակներն ավելի ծանր կշռեցին, քան Սերգեյի ներքին ուժն ու ցանկությունը՝ դառնալ այն, ինչ ինքն էր կամենում: Ուրեմն՝ բացի այն մարդկանցից, ովքեր կյանքում գտնում են իրենց տեղը և ովքեր սխալվում են այդ հարցում, կան նաև ուրիշները. այդ նրանք են, ում նըկատմամբ ճակատագիրը խիստ է եղել, ում կյանքի սուղ պայմանները, փաստացի վիճակներն իրենք են վճռել նրա տեղն այս կյանքում: Երբ Սերգեյը նըման խոսքեր է ասում, չգիտես ինչու, ինձ սկսում է թվալ, թե նա տգեղանում, կեղծ Սերգեյ է դառնում: Միշտ այդպիսի ըզգացողություն եմ ունեցել: Պարզունակ է այն տրամաբանությունը, որով շարունակելու եմ խոսքս, սակայն ինձ ընդհանուր առմամբ ճշմարիտ է թվում. ըստ իս՝ ամեն ինչ գեղեցիկ է իր տեղում, իսկ եթե իր տեղում չէ՝ տգեղանում է: Գետը գեղեցիկ է, երբ հունի մեջ է, իսկ երբ հորդանում, դուրս է գալիս իր ափերից, ավերում շուրջբոլորը, իհարկե, տգեղանում է: Թռչունը գեղեցիկ է երկնքում՝ իր ճախրանքի մեջ, քանի որ հենց երկնքում է նա թռչուն: Մարդն էլ գեղեցիկ է իր հայրենիքում. անգլիացին՝ Անգլիայում, վրացին՝ Վրաստանում, հայը՝ Հայաստանում, իր Մասիս սարի կողքին, իր նախնյաց արևի տակ:

Մեր դպրոցում Փառանձեմ անունով մի գեղեցիկ աղջիկ կար: Հիմա նա Ամերի-

կայում դերասանուհի է: Անունն էլ այլևս Փառանձեմ չէ: Ասում են այնտեղի կինոռեժիսորներից ոմանք նրան դերասանուհիներից առաջինն գեղեցկուհին են համարում: Իսկ ես հազարավոր կիլոմետրերի հեռավորությունից, չգիտես ինչու, համաձայն չեմ այդ կինոռեժիսորների հետ: Նրանք Փառանձեմին պետք է տեսնեին այստեղ, մեր դպրոցում: Այ, այդ ժամանակ... Ինչպե՞ս: Ստացվում է՝ ով իր հայրենիքում է, նա արդեն գեղեցիկ մարդ է ու վե՞րջ: Իհարկե, այդպես չէ: Պետք է հայրենիքում էլ մարդը գտնի իր սեփական տեղը: Թե չէ ոչ միայն չի կարող օգտակար լինել իր հայրենիքին, այլև կամա-ակամա գուցե նաև վնասի նրան: «Ճի՞շտ է,— նորից մտովի դիմում եմ իմ պատուհանի առջևով անցնող դըպրոցականներին:— Իսկ դուք ի՞նչ պիտի անեք դպրոցն ավարտելուց հետո: Չէ՞ որ արդեն 10-րդ դասարանում եք: Այս Լեռը, որի կողքին ապրում եք, չէ՞ որ պետք է ձեր ուսերին տանեք, որովհետև հայրենիքը նաև ծանր հոգևոր բեռ է, որ պետք է կարողանալ կրել: Անհրաժեշտ է ճիշտ ընտրել սեփական տեղը կյանքում, որովհետև մարդիկ տարբերվում են իրենց կարողություններով: Մեկը կարող է իր հայրենիքի համար սովորական քարտաշ լինելու չափ բեռը պատվով կըրել, մեկն իր այդ պատիվը կարող է պահել կոմպոզիտոր լինելով, մեկը՝ նկարիչ, մեկ ուրիշը՝ մինիստր լինելու չափ:

Ընտանիքում էլ ամեն մեկը պետք է իր տեղում լինի, երեխան՝ երեխայի, հայրը՝ հոր, մայրը՝ մոր...

Դասարանում էլ:

Եղավ մի ժամանակ, երբ բոլոր ուսուցիչները սկսեցին բողոքել մեր դասարանի կարգապահությունից: Ըստ որում՝ բոլորը միաբերան ասում էին, որ մենք անկարգություններ ենք անում, որքան էլ տարօրինակ է՝ հատկապես դասերի ժամանակ, իսկ դասամիջոցներին համեմատաբար խելոք էինք լինում:

— Ձեզ վերջերս շատ տգեղ եք պահում,— ասում էր մեր դասղեկը:

— Իսկի ոնց որ այն դասարանը չլինի,— գլուխն էր օրորում ուսմասվարը:

— Իմ աջ ձեռքը ինձ ապտակում է,— կրկնում է դիրեկտորը:

Այո, մենք սիրված դասարան էինք, բայց այդ մի քանի ամսում ամեն ինչ, չգիտես ինչու, տակնուվրա էր եղել: Այսօր ինձ համար շատ դիպուկ է հնչում ընկեր Բալայանի խոսքը. «Ձեզ վերջերս շատ տգեղ եք պահում»: Նա մասնագիտությամբ նկարիչ էր, և նրա համար բոլոր նըկարիչների համար աշխարհը բաժանված է երկու մասի՝ գեղեցիկի և տգեղի: Ճշմարիտը, բարին, ազնիվը, սիրելին՝ այս ամենը նրանք ներառում են գեղեցիկի հասկացության մեջ, իսկ սուտը, չարն ու ատելին՝ տգեղի: Եվ ընկեր Բալայանը մեր չարությունն էր տգեղ անվանում: Եվ մի օր, մեծ դասամիջոցին նա մտավ դասարան ու... «Լևոն, արի առաջին նստարանին նստիր... Սահակ, դու տեղափոխվիր Գայանեի մոտ... Էլիզա, այսուհետև երկուսով չնստեք, անցիր Սերգեյի մոտ... Թադևոս, դու մեջտեղի շարքի վերջին նստարանին կնստես... Կարեն, Ռուզանը կնստի քո կողքին... Վաչագան, գնա Անահիտի մոտ...»:

Մեզ դուր էին գալիս այդ տեղափոխությունները, թեև այն ժամանակ խորությամբ չէինք ըմբռնում դրանց իմաստը: Բոլորս ժպտում էինք, մեր դասարանը լցվել էր ժպիտով, և այդ ժպիտն այնպես էր գեղեցկացրել մեզ, որ տգեղ պահվածքի մասին խոսք անգամ լինել չէր կարող: Եվ, իրոք, այդ օրվանից մենք նորից սիրված դասարան էինք, և՛ դասերի ժամանակ էինք խելոք, և՛ դասամիջոցներին:

Կյանքը դպրոցից տարբերվում է այն բանով, որ դպրոցն ավարտելուց հետո ոչ մի դասղեկ քեզ այլևս չի տեղափոխելու-նստեցնելու այն տեղում, որտեղ դու կարող ես ժպտալ և քո ժպիտով գեղեցկացնել նաև շրջապատդ: Կյանքում դու պետք է լինես քո գլխի տերը, թեև երբեմն (երբե՞մն) կյանքի պայմանները ու հանգամանքները, ճակատագրի լծակները կարող են ավելի ծանր կշռել, քան քո ներքին ուժն ու ցանկությունը: Ուղղակի պետք է ուժեղ լինել ու ոչ մի դեպքում չհանձնվել: Եվ այն ժամանակ ավելի թեթևությամբ կկրես այն, ինչ հայրենիքը քո ուսերին դնի:

Ահա թե ինչ էի ուզում ասել ձեզ, դըպրոցականներ, որ անցնում եք իմ պատուհանի առջևով, որ այս տողերս գրելու ընթացքում Լեռան ու հայացքիս հետ գտնվում էիք միևնույն ուղիղ գծի վրա: Եվ ուզում եմ, որ խոսքս ձեզ հասնի շուտ, քանի դեռ չի խարխլվել այդ գիծը: Իսկ եթե ոչ՝ ինձ կթվա, որ այս արևի տակ ու այս Լեռան կողքին ես չեմ գըտել իմ տեղը:



ԵՐՎԱՆԴ
ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Մրջյունիկ թագավորը

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մի մրջյունիկ երես առած
Տեղում այնքան վեր-վեր թռավ,
Այնքան կանչեց՝ առա՜ջ-առա՜ջ,
Որ… թագավոր մի օր դառավ:

Դառավ՝ դառավ. ցավը դա չէր,
Այն էր ցավը, որ էլ չաճեց,
Մնաց այնքան, ինչքան որ կար,
Եվ չգտավ ոչ ոք մի ճար:

Դա էլ ոչինչ. ի՞նչ էր եղել,
Թագավոր էր նա մի ահեղ,
Բայց արի տես, որ շրջելիս
Իր բոյն իրեն դուր չէր գալիս:

Ուրիշները՝ երկար ու ձիգ,
Ինքն իր աչքին՝ գունդ ու կծիկ:
Կանգնեց գահին, շուրջը նայեց
Եվ ծանր ու մեծ հրամայեց.

— Ես՝ ձեր տերը, ես՝ թագավոր,
Ենթարկվել եք ինձ պարտավոր:
Լսե՜ք, լսե՜ք, լսե՜ք, լսե՜ք.
Ով բոյով է, պիտի խուզենք:
Միևնույն է՝ վերից, վարից,
Որ կարճ լինեք թագավորից:

Հրաման էր արքայական.
Մկրատները իրենք եկան:
Եվ գլուխներ թռան ազատ,
Ոտքեր թռան հազար-հազար:

Նրանք միայն ազատվեցին,
Ովքեր խորը խոնարհվեցին
Ու մնացին լուռ, ծնկաչոք,
Ուրիշ ոչ ոք, ուրիշ ոչ ոք:

Եվ թագավորն ուրախացավ,
Ճառագելով եկավ-անցավ:
Գուլիվեր էր ասես մի նոր,
Լիլիպուտներ՝ իր չորս բոլոր:

Գտել էր իր ցավին հնար.
Էլ տխրելու պատճառ չկար:
Բայց… չէր անցել մի քանի օր,
Ծնվեց հանկարծ կասկած մի նոր:

Թագավորը լավ չէր քնում,
Նստած վախով միտք էր անում.
«Բա որ հանկարծ, ո՞վ իմանա,
Մի լիլիպուտ արքա դառնա
Եվ ինձ նման կանչի՝ լսե՛ք,
Ով բոյով է, պիտի խուզենք…

Առաջինը ինձ կտանեն,
Թագս գլխիս հետ կհանեն»:
Այսպես տխուր, այսպես մենակ,
Այնքան տանջվեց անժամանակ,
Այնքան անհույս նա վշտացավ,
Որ խեղճ սիրտը չդիմացավ…

Եվ մեր հեքիաթն էլ վերջացավ:

# ԲՈՒՅՍԵՐԻ ԵՎ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ

Արդյոք գիտե՞ք, որ թանկարժեք քարերը ինչ-որ տեղ նաև... կենդանիներ են, որ նրանց մեջ կա նաև ջուր և որ այդ քարերը ծերանում են:

Հանքանյութերը տարբեր կերպ են առաջանում: Դրանց մի մասը ձևավորում և բյուրեղանում է շատ մեծ խորություններում՝ ահռելի ճնշման տակ: Մյուսները երկրի կեղևի տակ եռացող լավայի հետագա փոփոխությունների արդյունք են: Մի մասն էլ ստորերկրյա տաք ջրերի նստվածքագոյացումներն են: Կան սակայն տեսակներ, որոնք իրենց ծագմամբ հանքային չեն և գոյանում են կենդանի օրգանիզմներում: Անցե՞լ է ձեր մտքով, որ մեր ատամները և ոսկորները նույնպես յուրօրինակ բաղադրությամբ «հանքաքարեր են»: Իսկ որոշ հիվանդությունների դեպքում, ինչպես հայտնի է, երիկամներում գոյանում են քարեր, որոնք իրենց բաղադրությամբ բոլորովին էլ չեն տարբերվում բնության մեջ հանդիպող հանքաքարերից:

Ոչ հանքային ծագում ունեցող քարերից են մարգարիտը, սաթը, մարջանը, սադափը և գիշերասաթը: Բոլոր այս թվարկված քարերը թանկարժեք կամ կիսաթանկարժեք են, որոնց նկատմամբ գիտական հետաքրքրությունը գնալով մեծանում է:

Կենդանական ծագում ունեցող քարերից է մարգարիտը, որը որոշ փափկամորթների մարմնում զարգացող գնդաձև կամ անկանոն գոյացում է: Հիշենք, որ փափկամորթները գոյատևում են հիմնականում խեցիավոր պատյաններում: Երբ այդպիսի խեցու մեջ ընկնում է կողմնակի որևէ բան, ասենք՝ ավազահատիկ, ապա որոշ ժամանակ անց այդ ավազահատիկի շուրջը սկսում է կուտակվել, այսպես կոչված սադափը: Ժամանակի ընթացքում չափազանց բարդ կենսաքիմիական պրոցեսների շնորհիվ այդ ավազահատիկը մաշվում է՝ ծնունդ տալով շքեղաշուք փայլարձակումներով օժտված մարգարտահատիկին:

Մարգարիտի որակը որոշվում է չորս բնութագրական հատկանիշներով՝ փայլով, գույնով, ձևով և չափերով: Հիմնականը, սակայն, նրա փայլն է, որը պայմա-




Հողագնդի տարբեր ծայրերից Երևան էին ժամանել դասական ոճի անվանի շատ ըմբիշներ՝ մասնակցելու լեգենդար Իվան Պոդդուբնու անվան միջազգային մրցաշարին, որը մարզիկների շրջանում հայտնի է «աշխարհի փոքր առաջնություն» անվանումով:

«Դինամո» մարզադահլիճում վերջին մարզումներն էր անցկացնում ՍՍՀՄ հավաքականը: Այստեղ շատ «աստղերի» կարելի էր հանդիպել՝ Բոլբոշինին, Կոնիգինին, Աբխազավային, Ռոստորոցկուն...

Ես հայացքս չէի կարողանում կտրել նրանցից, որի մասին այսքան շատ էի լսել ու քիչ կարդացել... Եվրոպայի, աշխարհի կրկնակի չեմպիոն, օլիմպիական խաղերի արծաթե մեդալակիր, տասնյակ միջազգային մրցաշարերի հաղթող: Արդեն նա էր մարզում երիտասարդներին, ու դրա մեջ մի տխուր բան կար:

Հանրաճանաչ ըմբիշ Բենուր Փաշայանը ծանոթացրեց մեզ, և մենք այդ օրվանից բարեկամներ դարձանք:

... Նելսոն Դավթյանը 1974 թվականի աշխարհի առաջնությունում, մասնագետների կարծիքով, մարզական սխրանք գործեց: Նա... բայց եկեք չշտապենք:

Ծնվել է 1950-ին, Լեռնային Ղարաբա-

# ՐԳԵՎԱԾ ԹԱՆԿԱՐԺԵՔ ՔԱՐԵՐԸ

նավորված է գույների խաղով: Հատկանշական է, որ լավագույն մարգարիտները չունեն սեփական գույն: Շնորհիվ իրենց թափանցելիության, դրանք լինում են մեղմ արծաթափայլ: Իհարկե, կան նաև սպիտակ, վարդագույն, երկնագույն, ոսկեգույն, դեղին, բրոնզագույն և նույնիսկ սև մարգարիտներ:

Մարգարտահատիկները լինում են տարբեր չափերի՝ գնդասեղի գլխիկի մեծությունից մինչև դաշտային կաղնու մեծության: Կան էլ ավելի մեծ չափերի մարգարիտներ: Առ այսօր ամենամեծ մարգարիտը 1934 թվականին ֆիլիպինների Փալավան կղզու ափամերձ տարածություններից գտնվածն է, որի կշիռը 6,35 կիլոգրամ է, երկարությունը՝ 24 սանտիմետր: Արտաքին տեսքով այն շատ նման է չալմայավոր մուսուլմանի գլխին, որի համար էլ այն անվանվել է «Ալլահի մարգարիտ»: Հետաքրքիր է «մարգարիտ» անվանումը տարբեր լեզուներում: Ռուսերենում՝ ժեմչուգ, չինարենում՝ չժեն-չոր, արաբերենում՝ զինչուգ, հունարենում՝ մարգարոն, պարսկերենում՝ մորվարիտ: Ծովային մարգարիտը արտահանվում է Կարմիր ծովում, Պարսից ծոցում, Շրի Լանկայում, Ավստրալիայի, Ճապոնիայի, Վենեսուելայի ափերին: Մարգարիտի կենդանական ծագում ունենալու լավագույն առհավատչյան նրա բաղադրության մեջ եղած մի շարք օրգանական նյութերն են: Եվս կարևոր մի փաստ. մարգարիտի բաղադրության մեջ կա մոտ չորս տոկոս ջուր, որը օրգանական մոլեկուլների բաղադրիչն է:

Հարց է ծագում, մարգարիտի բաղադրության մեջ եղած ջուրը ժամանակի ընթացքում չի՞ գոլորշիանում: Չէ՞ որ ֆիզիկայից հայտնի է, որ գոլորշիացումը դիտվում է ցանկացած ջերմաստիճանում: Պարզվում է, որ, իրոք, այդ ջուրը հեռանում է մարգարիտից մոտ հարյուր տարվա ընթացքում: Ահա այս է պատճառը, որ ժամանակի ընթացքում մարգարիտը «ծերանում» է, քայքայվում են նրանում եղած օրգանական մի շարք նյութեր և այն կորցնում է իր մի շարք արժեքավոր ֆիզիկա-քիմիական հատկությունները:

---

դի Ճարտար գյուղում: Հանգամանքների բերումով ընտանիքը տեղափոխվել է Գրոզնի, այժմ ապրում է Կիևում: Մեր բազմաթիվ հանդիպումների ժամանակ նա սիրով էր խոսում հայրենի գյուղի, իր մանկության մասին:

— Բայց ամենից շատ իմ մեջ ապրում են մեր գյուղի պարզ, հյուրասեր ու աշխատանքից չհոգնող մարդիկ: Ճարտար այցելելիս միայնակ թափառում եմ սար ու ձորերում, հիշում եմ իմ այնքան երջանիկ մանկությունը:

Բայց վերադառնանք 1974-ի «դեպքերին»: Աշխարհի հերթական առաջնությունից առաջ հանկարծ, ի զարմանս բոլորի, պարզվում է, որ հավաքականի № 1 թեկնածուի փոխարեն Կատովիցե պիտի մեկնի Կաֆկանը:

Նելսոնը զայրացած է, անզոր ու ընկճված: Նույն անպատասխան հարցն է՝ ինչո՞ւ, ինչո՞ւ... Որքան քրտինք է թափել այդ ճանապարհին, որքան անքուն գիշերներ լուսացրել:

Մեկ էլ ե՞րբ առիթ կներկայա: Եվ կունենա՞ արդյոք...

Մի քանի օր անց, սակայն, ստացվում է հեռագիր. «Շտապ մեկնիր Կատովիցե. հանդես կգաս 68 կգ քաշային կարգում»: Այսպես միայն հեքիաթում կարող է լինել: Հավատա՞լ արդյոք: Իսկ ինչու 68-ում, երբ ինքը 62 էլ չի կշռում: Մեծ ըսպորտում նման բան դեռևս չի եղել: Բայց դատողությունների ժամանակը չէ, ճամպրուկդ կապիր, տղա՛:

Հետագայում պարզվեց, որ Շամիլ Խիսամուտինովը հիվանդացել է և նրա «քաշը փակելու» համար են պարզապես հրավիրել Նելսոնին՝ հեռավոր հույս անգամ չունենալով, թե նա մրցանակի կարժանանա (ինչպես իր «Գոտեմարտ» գրքում խոստովանում է ավագ մարզիչ Վ. Իգումենովը):

Մոսկվայի օդանավակայանում հաղորդեցին, որ Վարշավա մեկնող ինքնաթիռի թռիչքը հետաձգվում է: Նելսոնը չգիտեր անելիքը. ճակատագրի նոր խաղ չէ՞...

Իսկ ի՞նչ է ուզում այս ճապոնացին.

— Դուք ըմբի՞շ:

— Այո,— վհատ ասում է Նելսոնը,— մեկնում եմ Կատովիցե՝ մասնակցելու աշխարհի առաջնությանը:

Ֆրանսիայի Լյուդովիկոս 14-րդ-ի պալատական կաշեգործ Գայլուշան Եվրոպայում առաջինը նկատեց, որ Ճապոնիայից, Կորեայից և Չինաստանից բերվող շնաձկների կաշիների մի որոշ մասը առանձնանում է իր բնորոշ փայլով և տեսքով:

Գայլուշայի մեթոդով շնաձկան կաշին մշակելու համար այն նախ խարտոցով հղկում են, որից հետո մշակում քիմիական հատուկ նյութերով և ներկում մուգկանաչ կամ դարչնագույն: Ստացվում է հիանալի դրվագազարդված էլաստիկ կաշի: Շնաձկան կաշվի վրա եղած քարերի բաղադրությունը կախված է շնաձկան տեսակից և նրա ապրելու վայրից: Սակայն հիմնականում այդ քարերը կալցիումի ֆոսֆորատներ են և իրենց բաղադրությամբ շատ մոտ են մարդկանց ատամների բաղադրությանը:

Սաթը, որը Մերձբալթիկայի բնիկները համարում են արևի ճառագայթների կտորներ, բուսական ծագում ունի: Այն առաջանում է փշատերև ծառերի խեժից՝ յուրահատուկ պայմաններում խեժաթթուների և քիմիական այլ նյութերի միջև ընթացող բարդ փոխարկումների հետևանքով: Մոտ 140 աստիճանում սաթը փափկում է և դառնում մամլվող, իսկ 300°-ի պայմաններում հալվում, քայքայվում է: Հատկանշական է այն փաստը, որ սաթի հանույթի մոտ վաթսուն տոկոսը ենթարկվում է քիմիական վերամշակման՝ սաթաթթու, սաթայուղ և այլ խեժեր ստանալու համար: Այլ մարմինների հետ շփումից սաթը իրեն է ձգում թղթի կտորներ: Սաթի այդ հատկությունը հետագայում դարձավ գիտական հետաքրքրության առարկա: Հույները սաթին անվանում են էլեկտրոն, որտեղից էլ ժամանակակից էլեկտրականություն, էլեկտրոնիկա բառերը:

Հետաքրքիր հատկություններ ունի սև սաթը՝ հագաթը, որին հայերը անվանել են գիշերաքար, գիշերասաթ կամ գիշերի: Գիշերասաթը նույնպես գոյանում է փշատերև ծառերից: Սև, փայլուն քար է, շատ լավ հղկվում է և դառնում զարդարանքի առարկա: Հին Հայաստանում եղել է մի ավանդույթ. գիշերասաթը կախում էին նորածնի օրորոցի վրա, որ ժամանակի ընթացքում երեխայի կապույտ աչքերը դառնան սև:

Յուրօրինակ ծագում ունեն մարջանները կամ էլ, ինչպես ընդունված է՝ բուստերը: Սրանք հանդիպում են ծովերում, աղի լճերում և ունեն բուսական ծագում: Սրանց բաղադրությունը

---

Քիչ հետո ճապոնացին (որ ինչպե՛ս երևում է, նույնպես ըմբիշ էր կամ մրցավար) բռնում է ձեռքը և ուժով քարշ տալիս պետի մոտ:

— Դուք գիտե՞ք, սա աշխարհի չեմպիոն,— աղմկում է նա,— տղան ուշանում է մրցումներից:

Նրան մի կերպ հանգստացնում են: Շատ չանցած, ով զարմանք՝ «Վարշավա մեկնողները հրավիրվում են թռիչքի»:

— Դուք աշխարհի չեմպիոն դառնալ,— ուրախ աչքով է անում ճապոնացին,—այլ, կտեսնել:

Հավաքականի տղաները ուրախությամբ ընդունեցին Նելսոնին: Եվ, սակայն, նա զգաց, որ իրեն լուրջ չեն վերաբերվում: Ինքն էլ մտավ խաղի մեջ: Օգնում էր ըմբիշներին ինչով կարող էր՝ զգացնել տալով, թե ինքը հասկանում է իր «վիճակը»: Նելսոնը, միայն Նելսոնն էր հավատում իրեն: Հոգին կրծում էր վիրավորանքի ցավը և պիտի ապացուցեր, աշխարհին պիտի ապացուցեր...

Հետաքրքիր է ըմբիշների կշռումը: Մարզիկները տնտղում են միմյանց, գուշակություններ անում...

— Նելսոն,— ի դեպ ասում է մարզիչը,— գնա որևէ բան կեր, հանկարծ ու 62 կգ էլ չկշռես...

Անթաքույց ցնծում են «աստղերը»՝ Վելինգը, Լիպենը, Նեդնը... Խիսամուտդինովի փոխարեն ներկայանում է ինչ-որ նորաթուխ Եվրոպայի չեմպիոն, որ «քաշ» էլ չունի:

Առաջին գոտեմարտը ռումինացու հետ էր, և միավորներով մաքուր հաղթանակ տարավ: Ընկերները ուրախացան՝ ապրես Նելսոն, որ կնշանակեր՝ տես է, չէինք սպասում:

Շվեդ Սկյոլդի հետ գոտեմարտն ավարտվեց 9:0 հաշվով: Շնորհավորանքները նա ընդունեց համեստ ժպիտով՝ ստացվեց, էլի: Նա իրեն անփույթ ու անհոգ էր պահում, իսկ ներսում եռում էր պայքարի ոգին:

Հաջորդը գերմանացի Վելինգն է, ու նա կարծես այնքան էլ վստահ չի զգում իրեն: Նելսոնն արդեն նվաճել է հանդիսատեսի համակրանքը: Նրան ծափե-



հիմնականում պայմանավորված է կալցիումի և մագնեզիումի կարբոնատներով:

Եգիպտոսում մարջանները որպես զարդի առարկաներ հայտնի էին մեր թվարկությունից երեք-չորս հազար տարի առաջ: Անչափ հետաքրքիր է այն փաստը, որ մարջանը միաժամանակ և բույս է, և հանքաքար: 17-րդ դարի հայ պատմիչ Առաքել Դավրիժեցին, իր աշխատություններից մեկում մարջանի մասին գրել է. «Քանի դեռ բուստը ծովում է, այն փափուկ է, իսկ երբ հանում են ծովից, պնդանում, ամրանում է»: Նման միտք է արտահայտել նաև մեր թվարկության առաջին դարի հույն բժիշկ և բուսաբան Դիոսկորիդոսը, գրելով, որ բուստը բույս է և այն քարանում է, երբ հանվում է ծովից:

Մի քանի խոսք «ծովափի ատամի» մասին: Ծովափի վերին ծնոտի ժանիքը երեքից ութ կիլոգրամ է, երկարությունը՝ մոտ մեկ մետր: Դրանից կարելի է պատրաստել մեծ թվով զարդեր, պերճանքի առարկաներ:

Այսօր, սակայն, աշխարհի բոլոր անկյուններում կարելի է հանդիպել կեղծ մարգարիտների և բուստերի, սաթերի և գիշերասաթերի, որոնք ստացվում են արհեստական եղանակով: Ժամանակակից օրգանական քիմիան իր հրաշագործ մեթոդներով կարող է սինթեզել այնպիսի պլաստիկ զանգվածներ, որոնք սովորական աչքը չի կարող տարբերել բնական սաթից և սադափից: Բնական սաթը, սադափը, մարջանը և մարգարիտը 20—30 անգամ մեծացնող խոշորացույցի տակ ցուցադրում են իրենց յուրահատուկ միկրոկառուցվածքը, ի տարբերություն արհեստականների, որոնք անկառուցվածք, խիտ ամբողջություններ են: Տարբերակման հիանալի միջոց է նաև սովորական աղաթթուն, որից բնական քարերը ազդվում են՝ ի տարբերություն արհեստականների:

**ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ**

---

րով են դիմավորում: Բոլորի համար ինչոր անհասկանալի բան է կատարվում: Ահեղ մրցակիցները պարզապես գլուխ չեն հանում նրա հնարքներից: Ահա ցուցատախտակի վրա կրկին 9:0 է և այս հանելուկային տղան գրոհում է դեռ: Այ քեզ բան: Նշանավոր Վելինգին պասիվ մարտ վարելու համար հեռացնո՞ւմ են մրցագորգից: Իսկ բուլղարացի Նեդևն ինչո՞ւ է գլուխը կորցրած համբուրում Դավթյանին: Բան չես հասկանա: Ա՛, Վելինգը միշտ հաղթել է Նեդևին, իսկ Նելսոնը դուրս մղեց նրան պայքարից: Նեդևն արդեն տոնում է իր մոտակա հաղթանակը: Տեսնենք, տեսնենք...

Իսկ մեր մարզիչները ուրախ զարմանքի մեջ են՝ ո՞վ կմտածեր...

Նեդևը սամում է, փոթորիկ: Իր հզոր մկաններով նա ջահել ցուլի է նման: Իսկ Նելսոնը բռնել է նրա ձեռքն ու Նեդևը անհաջող փորձեր է անում ազատվելու երկաթե աքցանից: Նա չարացած է ու կորցրել է ինքնատիրապետումը: Իսկը ժամանակն է, Նելսոնը կատարում է սիրած հնարքը՝ սուզում իրանին, և գցելով գորգին՝ վաստակում մեկ միավոր: Ընդմիջումից հետո կրկնում է նույնը: Ահա և գոտեմարտը մոտենում է ավարտին: Նեդևն անզոր կատաղությամբ փնչացնում է, դիմում կոպտությունների. պատահական մի տղա պիտի փակի՞ իր ճանապարհը:

Գլխի հարված, և Նելսոնը համարյա ուշակորույս ընկնում է գորգին:

«Եթե գլուխս երկու կես չի եղել, անպայման չեմպիոն կդառնամ»— տրոփում է ուղեղում: Ապա ձեռքերով շոշափում է՝ չէ, կարծես տեղում է:

— Նելսոն, Նելսոն,— վանկարկում է դահլիճը, և նրա թուլացած մարմինը ուժ է առնում...

Աշխարհի շատ երկրներում դեռ պիտի նրան ծափահարեին: Գոտեմարտելու դավթյանական հանելուկային ոճը շատ բանավեճեր պիտի հարուցեր: Կախարդված շատ մանուկներ պիտի գնային նրա ետևից...

Այսպիսին է եղել Նելսոն Դավթյանի դժվարին ու գեղեցիկ մարզական ճանապարհը:



Ռ. ՇԻՇՄԱՆՅԱՆ, «ԳՅՈՒՂԱԿԱՆ ԱՆԿՅՈՒՆ»

Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՑԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։
Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.։

**ԻՆԴԵՔՍ՝ 77806** **ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.**